# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԴԻՑԱԲԱՆՈՒԹԵԱՆ

ԳՐԵԱՑ

## ՀԵՆՐԻԿՈՍ ԳԵԼՁԵՐ

ՈՒՍՈՒՑՉԱՊԵՏ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻՆ ՑԵՆԱՑԻ



ՎԵՆԵՏԻԿ. — Ս. ՂԱԶԱՐ

1897

# ՆԱԽԱԲԱՆ

Ազգի մի կրօնից պատմութիւնն՝ նորա քաղաքական եւ բարոյական կենաց գլխաւոր կողմերէն մին կը ներկայացընէ. վասն զի ո՛ եւ է զարգացումն՝ մտաւոր, արուեստական կամ ընկերական, սերտ յարընչութիւն ունի կրօնից հետ. ինչպէս իրօք եւս կը տեսնեմք, թէ աշխարհիս վերայ հանճարոյ եւ արուեստի հրաշակերտք՝ մեծաւ մասամբ կրօնական ներշընչութեանց արդիւնք են։ Դարձեալ, գիտեմք ի պատմութենէ, թէ այն ազգերն՝ որոնք մարդկութեան ընդհանուր յառաջադիմութեան հոսանքէն բոլորովին զատուած եւ վայրենի վիճակի մէջ ապրեր են, նոցա կրօնական գաղափարներն եւ պաշտամունք երբէք չեն զարգացած. այլ միշտ նոյն ամենաստոր աստիճանի մէջ մնացեր են, որ է **Նիւթապաշտութիւն** կամ **տարրապաշտութիւն** (fétichisme). այսպէս եղեր է, օրինակ իմն,

Աւստրալիոյ կղզեաց և կեդրոնական Ափրիկէի բնակիչք, բնիկ Ամերիկացիք, Լապոնացիք, եւ այլն: Մինչդեռ Ասիոյ ժողովուրդք, որք քաղաքականութեան և զարգացման նախկին վառարանին շուրջը գտնուեր են, անհամեմատ կերպով գերազանց եւ հոգեպաշտ (spiritualiste) կրօնք մ'ունեցեր են. ինչպէս եղեր են Չինացիք, որոնք իբր գերագոյն էակ կը ճանաչեն զԹիեն (երկինք), յորմէ գոյացեր են աշխարհիս հիմնական ութ տարերք (եթեր, զուտ ջուր, զուտ կրակ, կայծակ, հով, հասարակ ջուր, լերինք և երկիր). եւ Հնդիկք՝ որոնք գերագոյն էակ կը ճանաչեն զՆիրուան, իբր սկզբն եւ աղբիւր ամենայն էութեան եւ կատարելութեան: Պէտք է դիտել դարձեալ, թէ հեթանոս կրօնքն զանազան կերպարանաց ներքեւ կը ներկայանայ մեզ, ըստ որում կը զանազանին ազգերն յիրերաց՝ ծագմամբ, լեզուաւ եւ յատուկ բնաւորութեամբ. ինչպէս որ ոչ պակաս ազդեցութիւն ունեցեր են կրօնից վերայ՝ երկրի կլիմայն, աշխարհագրական դիրքն, տեղական սովորութիւնք եւ ազգին պատմութիւնն[1]:

Ամենայն հեթանոս կրօնք երկու դասակարգի կը բաժնուէին, ըստ որում կ'աստուածացնէին նոքա կամ բնութիւնը և կամ մարդը: Ամենայն երեւոյթ, իր եւ անձն, ո-

1. Diction. théologique. Paris. Gaume Frères et J. Duprey. 1863. t. XVII. *Paganisme*.

րոնք զարմանալի կը թուէին մարդուս, կամ օգուտ մի կ'ընէին և կամ սարսափ կ'ազդէին, եւ կամ գաղտնիք մի կը բովանդակէին իրենց մէջ՝ որոց չէր կարող նա հասու լինել, կ'անձնաւորէին եւ այլ եւ այլ անուններով, յատկութեամբք եւ պարագաներով կ'աստուածանային. եւ այս կերպով ամենայն ինչ աստուածացաւ՝ բաց յԱստուծոյ, ինչպէս գեղեցիկ կ'ըսէ Բոսիւէ։

Յատկապէս մեր ազգին գալով, անսարակոյս դից պաշտօնը սկսելէն յառաջ՝ իւր դրացի եւ մերձաւոր ազգաց կրօնքը եւ պաշտամունքը ունեցեր է, մանաւանդ որ իրանեան ցեղին պատկանող ամենահին ժողովուրդներէն մին է. եւ եթէ եղեր են եւս ազգեր, որոնք քաղաքականօրէն կամ մտաւոր զարգացմամբ ազդեցութիւն ունեցեր են մեր ազգին եւ աշխարհին վերայ, տարակոյս չի կայ թէ նոցա կրօնքը եւս ընդունած են Հայք։ Այդ ազգերն են՝ Ասորեստանեայք կամ Քաղդէացիք, Պարսիկք, Մարք եւ Պարթեւք, յորոց ոմանց ազգակիցք եւ դրացիք եղեր են լեզուաւ, եւ այլոց՝ աշխարհաւ, եւ ամենուն միանգամայն մերթ դաշնակիցք եւ մերթ հպատակք եղեր են Հայք։ Ուստի չենք սխալիր, եթէ ըսենք՝ թէ Հայոց նախնական կրօնքն, յետ բնապաշտութեան՝ որ ընդհանուր ամենայն ազգաց սկզբնական կրօնքն եղած է, հաւանականաբար եղեր է աստղապաշտութիւն կամ ախտարք, որ նոյնպէս ամենահին ժողովրդոց մէջ ընդհանուր կրօնք

դարձած էր, ինչպէս Քաղդէացւոց, Բաբելացւոց, Փիւնիկեցւոց, մասամբ եւս Պարսից մէջ։ Ցետոյ յաջորդեց կրակապաշտութիւն կամ մազդեզանց աղանդն, որ յատկապէս Պարսից և Մարաց կրօնքն էր, և անոնցմէ անցաւ նաեւ առ մեզ։ Բայց յետոյ ժամանակ անցնելով, երբ Պարսից ազդեցութիւնն տկարացաւ Հայաստանի վերայ, մեծին Աղեքսանդրի աշխարհակալութիւններէն յառաջ եւ վերջը, եւ սկսան Հայք Յունաց հետ շփուիլ եւ նոցա ազդեցութիւնը կրել, հայ կրօնքն այլ կերպարանափոխ եղաւ. վասն զի այնուհետեւ յունական դիք եւ պաշտամունք փայլելով առ Հայս, մարեցին եւ մըթընցուցին արեւուն եւ կրակին պաշտամունքը, մանաւանդ թէ՝ լաւագոյն եւս՝ այդ երկու կրօնքներն ի մի ձուլուեցան ժամանակ մի, ինչպէս յայտնի է մեզ՝ հին Գողթան տաղերու թանկագին նշխարներէն՝ Վահագնի վերայ շինուած ծանօթ երգէն. յորում կը ներկայանայ գոգցես Վահագն՝ յունական Հերակլի եւ պարսկային արեւու կամ Միհրի դից անձնաւորութիւնները միացուցած։

Ըստ Խորենացւոյ, — որչափ որ կարելի է վստահիլ նորա վկայութեան՝ յետ այնչափ հետազօտութեանց և նորանոր յարուցուած տարակոյսներու, — Արտաշէս Ա եղաւ՝ որ Յունաստանէն կուռքեր կամ դից արձաններ բերաւ[1], զորս յետոյ իւր որդին՝ մեծն Տիգ-

1. Մ. Խոր. Պատմութիւն Հայոց. Բ, ԺԲ։

րան Բ՝ զետեղեց առանձին հարուստ մեհենից մէջ[1]. բայց առոնցմէ յառաջ՝ Արշակունեաց նախահայրն Վաղարշակ՝ արեգական եւ լուսնի արձաններ կանգնեց եւ մեհեաններ շինեց[2], ինչպէս որ նորա որդին եւս Արշակ Ա՝ ոչ նուազ քան իւր հայրն՝ պաշտօնասէր եղաւ առ կուռս։ Աստի կը հետեւի թէ Հայկազունեաց միջոց դիք կամ աստուածոց արձաններ եւ կուռքեր չէին գտնուեր առ Հայս, եւ գլխաւորապէս երկու յիշեալ թագաւորներն եղան (Արտաշէս եւ Տիգրան), որոնք թերեւս ոչ այնչափ կրօնական զգացմամբ՝ քան գեղարուեստական ախորժակով շարժեալ՝ բերին այն արձանները։ Դարձեալ, ըստ ազգային աւանդութեան, Վաղարշակայ ժամանակները մի քանի ազնուական հնդիկք փախչելով Հայոց երկիրը եկան, իրենց դիքը եւ պաշտօնեաները միասին բերելով. սոքա թագաւորին հրամանաւ Տարօնի մէջ բնակեցան եւ այն կողմերը տարածեցին իրենց աղանդը, եւ այնչափ խոր արմատ ձգեց՝ որ Հայոց մէջ քրիստոնէութիւնը հաստատուելու միջոց՝ երկար եւ բուռն պատերազմներու պէտք եղաւ զայն ջնջելու համար։ Եւ այսպէս հայ հեթանոս կրօնքին մէջ կը տեսնուի խառնուրդ մի պարսկական, յունական, հնդկական, եւ թերեւս նա եւ՝ Քրիստոսէ մեկ

1. Անդ. Բ, ԺԴ։
2. Անդ. Բ, Ը։

կամ մէկուկէս դար յառաջ՝ ասորական կամ եդեսական կրօնքներու[1]։

Ներկայ գրութիւնս՝ Հայ դիցաբանութեան վերայ (Zur armenischen Götterlehre), Ցենայի համբաւաւոր ուսուցչապետ եւ հայագէտ Հ. Գելցերի երկասիրութիւնն է, յորում ցոյց կու տայ հեղինակն թէ՛ հայ եւ թէ ուրիշ հին ազգերու կրօնքի մասին ունեցած իւր կատարեալ հմտութիւնը։ Նա իրեն ուսումնասիրութեան հիմն դրեր է այն ազդեցութիւնքը, զոր դրացի ազգերն ըրեր են Հայոց լեզուին եւ մտաւոր զարգացման վերայ. եւ այդ ազդեցութեան շնորհիւ՝ նոցա կրօնական դաւանանքն եւս այլ եւ այլ փոփոխութեանց ենթակայ եղեր է, մերթ ամփոփուելով եւ մերթ ընդարձակելով նորա սահմանն։ Հեղինակն հինգ մասերու կամ գլուխներու բաժներ է իւր գրքոյկը, ըստ զանազան ազդեցութեան կամ ծագման դից եւ կրօնական պաշտամանց, հետեւեալ կարգով.

ա. Իրանեան ազդեցութիւն (Der Iranisce Einfluss). — բ. Ասորի ծագմամբ աստուածք (Gottheiten syrischen Ursprungs). — գ. Ազգային—հայկական աստուածք (Die national-armenischen Gottheiten). — դ. Հելլենական կամ յունական ազդեցութիւն (Einfluss des Hellenismus). — ե. Հայկական (հեթանոս) աստուածաբանութիւն (Armenische Theologie).

1. Հ. Ղ. Վ. Ալիշան. Հին հաւատք Հայոց. էջ 222։

Գուցէ բանասէրք իրենց փափաքած նորութիւնը չի տեսնեն առաջիկայ գրութեանս մէջ, այլ գէթ նորանոր տեսութիւններ եւ սուր դիտողութիւններ պիտի գտնեն անտառակոյս, որոնք՝ թէ եւ ծանօթ առարկայի մի՝ ինչ ինչ մութ կէտերուն վրայ լոյս սփռելով, պիտի կարող լինին օգտակար ծառայութիւն մ՚ընել ազգերնուս դիցաբանական պատմութեան, որով եւ յարգելի հեղինակն իւր նպատակին հասած պիտի լինի։ Արդէն այս նկատմամբ իւրմէ աւելի բան մի պահանջելու իրաւունք չունինք, քանի որ հայ հեթանոս կրօնից եւ պաշտամանց ամենասակաւ աղբիւրներ հասեր են ձեռքերնիս, ինչպէս կ՚ըսէ նա եւ հեղինակն, եւ ինչ ինչ հարեւանցի տեղեկութիւններ սատ անդ ցրուած մեր հին պատմիչներուն մօտ։

Զարմանալի է որ յարգ. հեղինակն հայ դիցաբանութեան վրայ գրողները յիշելով, ինչպէս են, պր. Էմին (Recherches sur le paganisme arménien), Հ. Ղ. Վ. Ալիշան (Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց), պր. Մինաս Չերազ (Notes sur la mythologie arménienne), բնաւ չի յիշատակեր զՀ. Բ. Սարգիսեան, որ թէ եւ առանձին գրքով կամ հատորով խօսած չէ այդ նիւթին վրայ, սակայն իւր «Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքն» գրքին մէջ առանձին գլխով ընդարձակօրէն եւ մանր ուսումնասիրութեամբ գրած է (Ժ. գլ. յէջս 119–157), ուր շատ կէտերու եւ դիտողու

թեանց մէջ գրեթէ ճշդիւ կը համաձայնի Գելցերի կարծեաց[1]. կ'երեւի թէ ծանօթութիւն չունէր այդ գրքի մասին։

Հ. Ց. Թորոս.

1. Յիշեալ հեղինակաց կամ գրութեանց վերայ՝ պէտք ենք յաւելուլ նա եւ 1893 տարւոյ Բազմավէպի մէջ եւ յաջորդաբար լոյս տեսած Հայք եւ հայ դիցաբանութիւն վերնագրով յօդուածները, որոնք կը կազմեն ամբողջական գրութիւն մի, բաւական հմտութեամբ լի, թէ եւ գտնուին մէջը տարօրինակ կարծիքներ՝ որք գիտնոց ընդունելի չեն։ Հարկ կը համարիմ նա եւ յիշել, թէ Միաբանութեանս վախճանած անձինքներէն (✠ 1882 օգոստ.) Հ. Արսէն Սուքրեան, հմուտ բանասէրն եւ քննադատ, առանձին հատորով մի շինած էր Պատմութիւն ազգային դիցաբանութեան, բաւական ընդարձակ, զոր՝ նոյնպէս իւր երկասիրած Հայ գրականութեան պատմութեան հետ՝ սկսաւ դասախօսել վանացս ուսումնարանին մէջ 1879՝ տարւոյն սկիզբները։ Սակայն, յետ մի քանի ամսոց, անողոք հիւանդութիւնն — որ եւ թառամեցոյց իւր դալար հասակը եւ հանճարը — ստիպեց զինքը թողուլ ի սպառ ուսուցչական եւ գրական ասպարէզը, յորում կը խոստանայր մեծ եւ կարեւոր դեր մի խաղալ։

## ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ

# ՀԱՅ ԴԻՑԱԲԱՆՈՒԹԵԱՆ



ԴԺԲԱՂԴԱԲԱՐ կարգէ դուրս սակաւ եւ աղքատ են այն աղբիւրներն, ուստի կ՚առնումք մեր այս տեղեկութիւնները հայ դիցաբանութեան մասին։ Յատկապէս դիցաբանական նիւթոց վերայ յօրինուած երգեր՝ շատ սակաւ թուով հասեր են ձեռքերնիս, եւ այս՝ դիւրաւ հասկանալի պատճառաց համար։ Ինչպէս փռանկաց տէրութեան մէջ, այսպէս նաեւ այս տեղ՝ եկեղեցականաց բուռն թշնամութիւնն՝ իւր բովանդակ ուժով եւ ամենայն իրաւամբ պիտի հակառակէր այսպիսի կրօնական երգերու. վասն զի որչափ ժամանակ որ ժողովրդեան մի սրտին մէջ հաստատուն մնայր իւր հայրենի աստուածները հռչակող հին երգոց սիրելի յիշատակն, նոյնչափ եւս դժուարաւ պիտի թափանցէր նորա մէջ ստուգիւ քրիստոնեայ հոգի մի[1]։ Հայ

1. Փաւստ. Գ, ԺԳ։

հեթանոս կրօնքի մասին եղած տեղեկութեանց մեր գլխաւոր աղբիւրն է՝ հին կրօնից ջնջուելու եւ նորա մեհենից կործանման ընդարձակ եւ մանրամասն պատմութիւնն, որ է՝ Ագաթանգեղոսի շարագրած Ս. Գրիգորի վարքն։ Հին դիցաբանական զրոյցներու թանկագին մնացորդներ կը գտնուին նա եւ Մար Աբաս Կատինայի եւ Մովսէսի Խորենացւոյ գործոց մէջ. եւ վերջապէս, աստղաբաշխ եւ չափագէտ Անանիա Շիրակացին եւս աւանդեր է մեզ դից մասին հետաքրքրական առասպելներ կամ զրոյցներ։

Ազգի մի աստուածներն կամ դիք՝ ժողովրդեան մտաց եւ ոգւոյն կրած այլ եւ այլ պատմական փոփոխմանց ներկայացուցիչներն են։ Տարօրինակ կարծիք մի չէ այս, այլ պատմական ամենամեծ ճշմարտութիւններէն մին՝ թէ ժողովրդեան մի ազգային կեանքն կը զարգանայ ցեղական հակառակութեանց կռուին մէջ։ Յորմէ հետէ հայ ազգն ունեցեր է իւր պատմական հաստատուն բնակութիւնը Հայաստանի մէջ, տիրող ազդեցութիւնք եղեր են, նախ՝ իրանեան, յետոյ՝ ասորական, եւ վերջապէս՝ յունական։ Արդէն իսկ մեր Թուականին Գ դարուն մէջ, քրիստոնէութիւնն աշխարհի և կենաց մասին

բոլորովին նոր գաղափար կամ տեսութիւն մի մտուց Երասխայ, Եփրատայ եւ Տիգրիսի բարձր հովիտներուն մէջ։ Բայց գլխաւորապէս այս հակառակութեանց փոփոխակի ազդեցութեամբ է՝ որ հայկական ազգային բնիկ գիտակցութիւնն զօրացաւ եւ զարգացաւ, օտար կրթութեան կամ զարգացման մի տարերաց հետ ունեցած շփմամբ՝ հայկական ճշմարիտ հայրենասիրական զգացումն ստացաւ իւր ամենագեղեցիկ բարգաւաճումը։

Խորագնին հետազօտութիւն մի հայկական Պանթէոնին, թէ ինչ արժէք ունէր նա՝ իբր ընդհանուր ժողովրդական ըմբռնումն՝ սկսեալ արքայից արքայ Տիգրանի ժամանակէն մինչեւ ի մեծն Խոսրով, շատ մեծ գիտական կարեւորութիւն ունի։ Այսու կարող ենք ճանչնալ կրօնական դրութիւնը մի այնպիսի ժողովրդեան, որ ծանօթ պատմական ժամանակի մէջ բոլորովին զուրկ էր տակաւին բարձր կրթութենէ, այս է՝ դրութիւններէ եւ գրականութենէ. եւ այս բանս կարող է մեծ լոյս սփռել մի եւ նոյն հանգամանաց մէջ գտնուող ուրիշ ժողովրդոց վիճակին վերայ [1]։

1. Մինչեւ ցարդ հայ դիցաբանութեան վերայ

# Ա.

## ԻՐԱՆԵԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ

Հայկական կրթութիւնն կամ զարգացումն ամենէն աւելի սաստիկ եւ մնայուն ազդեցութիւնը կրեր է իրանեան ազգերէն, այնպէս որ իրաւացի կերպով ըսուեր է՝ թէ ժողովուրդն բոլորովին իրանեան դարձեր էր։ Այս բանս շատ բնական էր, մինչ Քրիստոսի 66 թուականէն մինչեւ 238 տարին, Հայաստան իբր երկրորդ ճիւղ մ'եղեր էր Ասիոյ տիրապետող Պարթեւաց։ Սակայն անտարակոյս իրանեան ազդեցութիւնն շատ ա-

լոյս տեսած աշխատութիւններէն՝ Պ. Էմինի գիրքը բնաւ տեսած չեմ, ո՛չ ռուսերէն բնագիրը եւ ոչ գաղղիերէն թարգմանութիւնը։ Սակայն Լանգլուայի բազմաթիւ քաղուածները կուտան ինձ բաւական գաղափար մի, թէ եւ ոչ բոլորովին գոհացուցիչ։ Այս մասին հարկ է համեմատել մանաւանդ Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանի գրութիւնը, Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց (Վենետիկ, 1895)։ Մինաս Չերազ, «Հայ դիցաբանութեան վերայ ծանօթութեանց» մէջ (*Transactions of the IX international congress of Orientalists, London,* 1893 *II. S.* 822–845), մեզ կարեւոր տեղեկութիւններ կու տայ

ւելի հին ժամանակէ սկսեալ զգալի եղեր էր Հայաստանի մէջ, նոյն իսկ արշակունի թագաւորաց իշխանութեան միջոց։ Վաղուց արդէն՝ հին պարսկական շրջանին միջոց, ինչպէս կ՚իմանանք Քսենոփոնի նկարագիրներէն, համեմատաբար ստորին աստիճանի զարգացում ունեցող հայ ժողովուրդն անգամ բաւական տեղեակ էր պարսիկ լեզուի։ Թագաւորաց կառուցած քաղաքները բոլորն այլ պարսիկ ծագմամբ անուններ կը կրեն նախարշակունի ժամանակամիջոցին. (Հմմտ. Հիւբշման. Հայ. Քերականութիւն, Ա, էջ 12)։ Սակայն կեդրոնական կառավարութեան ազդեցութիւնն՝ իրեն ամբողջութեամբը նկատուած՝ լեռնադաւառաց մէջ արտաքոյ կարգի տկար էր։ Ընդհանրապէս պարսկական ժամանակի զարգաց-

ներկայ ժողովրդական աւելորդապաշտութեանց մասին, որոնք սակայն բնիկ հայկական ծագումն չունին, եւ հազիւ թէ ցոյց կու տան մի քանի աղօտ նմանութիւններ ժողովրդեան հին կրօնից հետ։ Հեղինակին դիտողութիւնք մասամբ իւիք տարօրինակ պարզութիւն մ՚ունին. այսպէս, օրինակ իմն, մէջ կը բերէ նա բոլորովին արդի մանրավէպ մի՝ Թուղթ խաղացող երիտասարդի, զոր դեւն տարեր է ի Հնդկաստան, ըստ առասպելայօդ Ջենոբ Գլակայ՝ Հնդկաստանէն բերուած աստուածներուն քով (էջ 844, եւ այլն)։

*ման և կրթութեան նշանակութիւնն չափազանց կերպով գնահատուած է. որովհետեւ միակ ժամանակն է՝ որու մասին ստոյգ բան մի գիտենք, եւ միանգամայն՝ զի յոյն ժամանակագիրք շատ հարեւանցի տեղեկութիւններ կու տան մեզ Աղեքսանդրէն յառաջ եղած Ասիոյ նախկին հանգամանաց վերայ։ Ընդհակառակն, պարթև ժողովրդեան աշխարհապատմական կարեւոր առաքելութիւնն անծանօթ մնացեր է մեզ, որովհետեւ Սասանեանք՝ նոցա յաղթական նախանձորդքն՝ բոլորովին մթին եւ անճիշդ պատկեր մի գծեր են նոցա կրօնական վիճակին, եւ մանաւանդ որ նոցա վարչական եւ ընկերական կազմակերպութեան ամենէն աւելի հմուտ պատմըչին՝ Ապամէացի Պոսիդոնիոսի՝ գիրքն կորսուած է։ Լագարդի[1] մեծ արդիւնքն է, որ ցըցուցեր է՝*

1. *Հմմտ.* **Lagarde, Symmicta S. 33.** « *Այն բազմաթիւ բառերն, որք կը գտնուին հայերենի մէջ եւ նոյն են նոր–պարսկերենի բառերուն հետ, բոլորն այլ Արշակունեաց ժամանակէն մուտ գտեր են հայերենի մէջ, եւ հետեւաբար արշակունի ազգատոհմի Պահլաւներուն կը պատկանին, ուստի եւ պահլաւերէն են։ Զեն կարող նոքա սասանեան բառեր լինել, որովհետեւ Ս. Գրոց թարգմանութիւնն, որ եղեր է Ե դարուն կիսուն, գրեթէ յաճախ կը գործածէ զայնս։ Դարձեալ Լուկուլլոսի ժամանակ չէին*

թէ Հայաստանի մէջ մուտ գտող եւ տիրապետող կրթական զարգացումն՝ բոլորովին եւ կատարելապէս պարթեւական էր: Արդէն գրական ամենահին յիշատակարանն, Ս. Գրոց թարգմանութիւնն, պարսկերենէ փոխ առած այնքան բազմաթիւ բառեր ունի, որ Հայաստանի իրանացումն (Iranisirung) ապահովապէս տեղի ունեցեր է շատ աւելի հնագոյն շրջանի մէջ՝ քան այն ժամանակը, յորում Սասանեան—Շահընշահի (արքայից արքայի) մարզպաններն էին երկրին կառավարիչք:

Վաղուց արդէն, Ներոնէն յառաջ Հայոց հին թագաւորական իշխանութեան միջոց, զոր միայն Մար Աբաս Կատինայի եւ Մովսիսի Խորենացւոյ ցուցակներն արշակունի կ'ընեն, Հայաստանի վերայ շատ մեծ ազդեցութիւն ունեցեր է պարթեւ—իրանեան

կարող նոքա հին հայկական բառերու նշանակութիւն կամ արժէք ունեցող բառեր լինել. իսկ ենթադրել թէ 430ին հայկական լեզուն այնչափ խոր կերպով ազդեցութիւն կրած լինի Սասանեաններէն, որոնք 250էն սկսեալ թըշնամիք էին հայ Արշակունեաց, այնպէս որ ամէն տասը բառին մէկն սասանեան լինի, ոչ մի պատճառ չեմ տեսներ ընաւ այդ բանը ենթադրելու:

կրթութիւնն[1]։ Մեծն Տիգրան, թագաւորութեան հիմնադիր Արտաշիասի սերունդն, իւր երիտասարդութիւնը Պարթեւաց արքունեաց մէջ անցուց իբր պատանդ։ Արդէն Քրիստոսի 66 թուականէն յառաջ, շատ պարթեւ իշխաններ կը տիրապետէին Հայաստանի վերայ. եւ քաղաքական իրաց կարգադիր բարձրաստիճան ազնուականութեան համակրութիւնք միշտ ընդհանրապէս ի նըպաստ Պարթեւաց էին։ Նոյնպէս մեծամեծ ընտանիքներն իրօք արդէն գրեթէ բոլորովին իրանացեր էին. հետեւաբար նա եւ աւելի վերջը՝ հին ազնուական տոհմերն յօժարակամ սիրով յանձն առին՝ գաղթեալ Պահլաւունեաց (բաց յԱրշակունեաց՝ նաեւ Կարենեանց, Սուրենեանց, Ասպահապետաց, եւ այլն) գերիշխանութիւնը իրենց վերայ։ Տիգրանի ժամանակ Հայաստանի մէջ արքունեաց լեզուն արդէն իսկ պարթեւերէն էր բոլորովին։ Հայաստանի այս ամբողջական իրանացումն կատարեալ կերպով կը բացատրուի այն բազմաթիւ աստուածոց արձաններով, զորս Հայք փոխ առեր են Իրանէն։

1. Արդէն, Քրիստոսէ երկու դար յառաջ, Հայ իշխանք իրանեան առասպելայօդ դիւցազանց անուններ կը կրեն։ Համմտ. J. Marquart, Philolol. N. F. VIII. S. 505 N. 91.

Սոցա մէջ նախ եւ առաջ պէտք է յիշել Արամազդը, որ ըստ ամենայնի կը համեմատի պարսիկ Ահուրամազդայի*: Կը կոչուի նա « մեծն եւ արին Արամազդ[1] », « մեծն եւ արին Արամազդ, արարիչն երկնի եւ երկրի[2] »: Տրդատ Թագաւորն իւր հրովարտակին մէջ կ'ըսէ. « Ողջոյն հասեալ եւ շինութիւն դիցն օգնականութեամբ, լիութիւն պարարտութիւն յարոյն Արամազդայ[3] », եւ այլն: Բաւական կը համաձայնի այս՝ Աքեմենեանց կրօնական վարդապետութեան, օրինակ իմն՝ Քսերքսեսի խօսքերուն որ կ'ըսէ. « Ահուրամազդա՛ մեծ աստուած մ'է, մեծագոյն քան զամենայն աստուածս, որ ստեղծեց այս երկիրը, ստեղծեց այս երկինքը, եւ ստեղծեց շնորհքը եւ հաճոյքը մարդկանց համար »: Սակայն Ագաթանգեղոսի մէջ կը գտնուին ուրիշ բացատրութիւններ եւս, որոնք շատ կը տարբերին մազդեզանց կրօնական տե-

* Լեզուագէտք կը ստուգաբանեն այս անունս հետեւեալ կերպով. Ահուրա (սանսկրիտ. ասուրա) կը նշանակէ՝ էակ, կենսունակ, եւ այլն, իսկ մազդա՝ իմաստ, գիտութիւն: Բիւռնուֆ կը մեկնէ զայն Մեծիմաստ, բազմիմաստ, ամենիմաստ:

1. Ագաթ. Վենետիկ. 1835. Ե. 48:
2. Անդ. Ձ. 57:
3. Անդ. ԺԲ. 102:

սութիւններէ ։ Այսինքն է, կը կոչուի Արամազդ՝ « դիքն Արամազդ, հայր անուանեալ դիցն ամենայնի [1] »։ Միհր՝ որդի Արամազդայ կ'անուանուի [2]. Անահիտ [3] եւ Նանէա [4] կը կոչուին դստերք Արամազդայ ։ Կը կարդանք դարձեալ Ագաթանգեղոսի մէջ (էջ 486). «Ապա երթեալ հասանէր յամուր տեղին յանուանեալ Անի *, ի թագաւորական կայանսըն հանգստոցաց գերեզմանաց թագաւորացն Հայոց, եւ անդ կործանեցին զբագինսն եւս դիցն Արամազդայ՝ հօրն անուանեալ դիցն ամենայնի [5] » ։ Ապա ուրեմն, դիցազարմ հայ թագաւորներն Արամազդայ մեհեան — դղեկին մէջ կը թաղուէին ։ Այս բոլորն հիմնապէս կը տարբերի յիրաւի մեզի աւանդուած իբր մազդեզական կրօնից ճշմարիտ եւ ստոյգ վարդապետութենէն [6] ։ Հայաստանի մէջ՝ մազ-

1. Ագաթ. ձթ. 586 ։
2. Անդ. ձժ. 590 ։
3. Անդ. ե. 48 ։
4. Անդ. ձժ. 587 ։

* Արամազդայ գլխաւոր մեհեանն կը գտնուէր Դարանաղեաց գաւառին Անի ամրոցին մէջ՝ Եզըն-կայի մօտ ։

5. Հմմտ. Spiegel, Erânische Alterthumskunde, II, S. 24.

6. Յունարէնն § 132. τὸν βωμὸν Κρόνου τοῦ πατρὸς Διὸς παντοδαίμονος. Այս բացատրու-

դեզական կրօնքն շատ աւելի հին ժամանակներու կրօնական գաղափարներու եւ տեսութեանց հետ խառնուած կը գտնուի. որով հին հաւատքն Հայոց, խառնուելով Պարթեւներուն բերած իրանեան գաղափարաց հետ, խանգարեցաւ բոլորովին: Այսպիսի նման օրինակ մի հազիւ թէ կարող եմք գտնել այլուր, թերեւս միայն մասամբ ինչ ի Յունաստան: Ինչպէս որ, օրինակ իմն Հռոդոսի մէջ, Ζεὺς Ἀταβύριοςի * պաշտօնն կը ներկայացընէ պարզաբար Թաբորի փիւնիկեցի Բահաղը, որ կղզւոյն մէջ բնիկ հելլենացի աստուածոյն հետ ի մի ձուլուեցաւ. այսպէս նա եւ Հայաստանի մէջ Արամազդ, միանա-

թենէն դուրս՝ նա գրեթէ միշտ Արամազդը կը թարգմանէ Ζεύς. Գուտշմիդ (Kl. Schr. III, S. 342) կը հասկնայ այնու գերագոյն սկիզբը՝ Զրուան. իսկ Լագարդ ուրիշ կերպով կը մեկնէ, և հաւանականաբար աւելի ճիշդ է. (Agathang. S. 145).

* Ատաբիւրիոն (Ἀ'ταβύριον) լերանց շղթայ մ'է Հռոդոս կղզւոյն մէջ. Պոլիբիոս (Ե, 70) կը յիշատակէ քաղաք մի այդ լեռներէ միոյն վերայ. ἐπὶ Ἀταβύριον ὃ κεῖται μὲν ἐπὶ λόφου μαστοειδοῦς. Ստեփանոս Բիւզանդացին եւս կ'ըսէ. Ἀτάβυρον, ὄρος Ῥόδου... ἔστι καὶ Φοινίκης πόλις. Յովսեպոս կը գործածէ միանգամայն Ἰταβύριον եւ Ἀταβύριον ձեւերը, եւ այդ անուամբ կը կոչէ ս. Գրոց մէջ յիշուած Թաբոր (תָּבוֹר) լեռը:

լով հին հայկական դիցաբանութեան աստուածոց հօրը հետ, մի միայն էութիւն կամ դէք կազմեց։ Ըստ այսմ կրնանք նա եւ հետեւցընել, թէ կարելի է որ այն գերագոյն չաստուծոյն նախկին բնիկ անունն՝ Արամազդ չէ եղեր, այլ ուրիշ անուն մ՚ունեցեր է նախապարթեւական շրջանին մէջ, որ յետոյ կորսուեր է։

Այս տեղ պէտք ենք յիշել նա եւ Արամազդայ որդին Միհր (Միթրա*), որուն գըլխաւոր մեհեանն կը գտնուէր Դերջան գաւառին մէջ։ Ագաթանգեղոս (Ճժ. էջ 590) կ՚ըսէ. «Գայր հասանէր ի Մըհական (Մըհրական) մեհեանն՝ անուանեալ որդւոյն Արա-

* **Արարատ** ամսագրի (1897, թիւ Բ. փետրուար, **Մեհեկան ամիս**, յէջս 52–59) մէկ յօդուածագիրն, Կ. Կ. ստորագրութեամբ, սոյն **Միթրա** անուան ստուգաբանութիւնը կը դնէ **միտ** արմատէն, որ զանդիկի մէջ կը նշանակէ **կապել**, **մօտեցնել**, **հաշտեցնել**, իսկ սանսկրիտի մէջ՝ **սիրել**։ Այսպէս, **Միթրա**՝ երբ դից անուն՝ կը նշանակէ **միջնորդ**, **հաշտեցուցիչ**, իսկ երբ հասարակ անուն՝ **դաշինք**, **ուխտ**։ «Պարսից եւ Բակտրիոյ մէջ այն աներեւոյթ ոգին է սա, որ միջնորդ է լոյսի եւ խաւարի մէջ, ինքն է լոյս աստուածը, միջնորդ եւ հաշտարար մարդու եւ Արամազդի մէջ, եթերի իշխանն է, հաւատարմութեան պաշտպան եւ ուխտադրուժների պատուհաս»... (Iusti, Handb. N°. Zendsp. 232 etc. — Spiegel, Comm. d. Avesta I, 118. II, 56, 547).

մազդայ, ի գիւղն զոր Բագայառիճն[1] կոչեն՝ ըստ պարթեւարէն լեզուին »*։

Հուսկ յետոյ, իրանեան ծագմամբ արական աստուածներուն մէջ հարկ է յիշատակել Սպանդարամետ։ Բ Մակաբայեցւոց գրքին մէջ (Զ, 7), յունարէն Դիոնիսոսն թարգմանուած է Սպանդարամետ. Լագարդ[2] այդ անուան մէջ կը գտնէ զրադաշտական Սպենդա — Արմայիտ անունը։ Բնաւ տեղեկութիւն չունինք թէ Հայաստանի մէջ ի՛նչ կերպով եւ ո՛ւր կը պատուէր այս չաստուածս. նա պաշտօնական կերպով պաշտուած չաստուածներու կարգէն չէ, որոնք՝ քրիստոնէութեան յաղթանակին միջոց՝ տէրութեան իշխանութեամբ եւ ուժով ջնջուեցան։ Թերեւս նա լոկ տեղական պաշտաման

1. Մովս. Խոր. Բ. ԺԲ, կը գրէ. Բագայառիճ։

* Պարսից կրօնից մէջ, Միհր՝ արեգական անձնաւորութիւնն էր, ինչպէս անունն այլ հին փարսի լեզուաւ արեգակն կը նշանակէր, զոր հաստատեն նա եւ զենտ գրոց վկայութիւնք։ Դարձեալ հրոյ չաստուածն էր Պարսից մէջ, որով համեմատէր միանգամայն թէ յուն. Φοῖβος (Գուշակ. Արեգակն) դից, եւ թէ Հեփեստոսի (Ἥφαιστος – Հուր)։

2. Հմմտ. Ges. Abh. S. 264, 265; armen. Stud. S. 139.

մի կեդրոնը կը կազմէր: Կը կարդանք Թովմայի արծրունւոյ մէջ (հրատ. ի Պետրբուրգ, 1887, էջ 28). «Եւ երկիր պանդոկի Սպանդարամետ աստուծոյ է, ոչ ստեղծեալ յումեքէ, այլ որպէս երեւիդ՝ նոյնպէս էր». սակայն Հեփթաղաց Մանիխթայ թագաւորին կրօնական դաւանութեան մասը կը կազմէ այս, որ կը ներկայանայ իբր գլուխ գրադաշտական շարժման մի, եւ որ ընաւ ո՛ եւ է կապ չունի Հայաստանի հետ:

Իրանեան ծագումն ունի նոյնպէս Վահագն, որ թերեւս Հայոց ամենէն աւելի բընիկ ազգային եւ ժողովրդական չաստուածն է: Արդէն Վինդիշման եւ մասնաւորապէս Լագարդ նոյն կը համարին զայն՝ Իրանեան յաղթութեան դից կամ ոգւոյն՝ Վերեթրագնայի հետ[1]: Ագաթանգեղոսի[2] մէջ Վահագն*

1. Armen. Studien, S. 141. Հմմտ. ի մասնաւորի, H. Hübschmann, armenische Grammatik I, S. 75 ff. und die Ausführungen S. 77.

2. Ագաթանգեղոս. Վենետ. 1835, էջ 102 եւ 603.

* Բանասիրաց մէջ այլ եւ այլ կարծիք կան Վահագն անուան ստուգաբանութեան մասին. ոմանք կը համարին զայն կազմուած՝ սանսկրիտ վահ (Vah) արմատէն, որ կը նշանակէ բերել, բերող, եւ ագնի (agni) գոյականէն, որ հուր կը նշանակէ. ապա ուրեմն Վահագն է Բերող–հրոյ կամ Հրաբեր. (հմմտ.

*կը կոչուի այն չաստուածն, որ Հայոց աշխարհին պաշտպան եւ խնամակալ երեք չաստուածներուն մէջ երրորդ տեղը կը բռնէ: Բաց աստի՝ յիշեալ գրոց մէջ[1] երկու անգամ կը գտնենք ածականաբար գործածուած « Վահէվահեան մեհեան ». ապա ուրեմն Վահագնի հետ ունինք նաեւ Վահէվահէ անուան ձեւը, որ գուցէ՝ Վակեռնագելի ըրած ենթադրութեան համեմատ՝ իբր սպանդարամետական տօնից կամ գինեբբուաց ձայնարկութիւն մ'է. եւ կամ համառօտութիւն մի, ինչպէս է՝ օրինակ իմն՝ հարսանեաց գից յունարէն* Ὑμὴν *անունն* Ὑμέναιος*ի եւ այլն: Կը գտնենք Ագաթանգեղոսի մէջ (էջ 602) հետեւեալ տեղեկութիւնքը. « Եւ իբրեւ եկն եհաս ի սահ-*

**Ագաթանգեղոս** եւ այլն, Հ. Բարսեղ Վ. Սարգիսեանի. որ իւր կարծիքը Բիւռնուֆի վկայութեամբ կը հաստատէ. տ. Burnouf, Dictionnaire Sanscr. - Français, Paris, 1863, p. 8, 573): Իսկ այլք ուրիշ կերպով կը մեկնեն զայն. Ոմն կը համարին արիական Bhâg (որ կը կարդացուի **Վաագ**. Bh=Վ) բառին հետ, եւ կը նշանակէ **բաշխող** (ի՞նչ բանի...) եւ կամ, կազմուած է կ'ըսեն Bha կամ Bhâ (**Վա, վահ**) արմատէն, որ կը նշանակէ **բոց**, **աստղ**. եւ agni բառէն՝ որ կը նշանակէ **հուր** աստի վահագն կը լինի **բոց հրոյ**, **հուր բոց** (Ս. Վ. Նազարեթ. **Հայ դիցաբանութիւն**). այս վերջին մեկնութիւնս գրեթէ նոյն է վերոյիշեալ մեկնութեան հետ:

1. Անդ. յէջս 602 եւ 603.

մանս Հայոց, լուսաւ Գրիգորիոս՝ թէ վահէվահեան մեհեանն մնացեալ է յերկրին Տարօնոյ, մեհեանն մեծագանձ, լի ոսկով եւ արծաթով, եւ բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ, ութերորդ պաշտօն հռչակեալ, անուանեալն վիշապաքաղն Վահագնի[1], յաշտից տեղիք թագաւորացն Հայոց մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի, որ եւ անուանեալ ըստ յաճախապաշտաման տեղեացն Յաշտիշատ։ Զի յայնժամ եւս դեռ չէն կային երեք բագինքն ի նմա։ Առաջին՝ մեհեանն վահէվահեան. երկրորդ՝ Ոսկեմօր ոսկեծին դիցն, եւ բագինն իսկ յայս անուանեալ՝ Ոսկիահատ Ոսկիամօր դիցն. եւ երրորդ՝ մեհեանն անուանեալ Աստղկան դից, սենեակ Վահագնի կարդացեալ ըստ յունականին, որ է ինքն Ափրոդիտէս[2] »։

1. Յուն. εὐφημοτάτου δρακοντοπνίκτου Ἡρακλέους.

2. Յոյնն ունի § 140. καὶ ὁ τρίτος βωμὸς ἀστέρος θεῶν καὶ τῶν Ἡρακλέους ἐλέγετο κληθείς, κατα δὲ τοὺς Ἕλληνας Ἀφροδίτης. Ըստ հայ բընագրին պէտք էր « սենեակ Վահագնի » բառերը թարգմանել յունարէն κοιτὼν Ἡρακλέους. իսկ « ըստ յունականին » բացատրութիւնը պէտք

Տարակոյս չի կայ՝ թէ Ագաթանգեղոսի տուած սոյն տեղեկութիւնքն բոլորովին պայծառ եւ բացայայտ չեն. զի նախ եւ առաջ մի միայն մեհեան կը յիշէ, յետոյ մէջ կը բերէ երեք բագիններ. վերջը առանձին նըկարագրութեան մէջ երեք մեհեան կը հաշուէ, եւ երկրորդը յիշելու միջոց՝ յայտնապէս կը զանազանէ հեղինակն մեհեան եւ բագին* բառերը: Յոյնն կը թարգմանէ. τοῦτο τὸ ἱερὸν ἔτι περιέστηκεν, τρεῖς βωμοὺς ἐν ἑαυτῷ ἔχον[1]. սակայն նա այսպիսի

էր յաջորդ խօսքին հետ միացընել (հայ բնագրին մէջ), ըստ յունարէն թարգմանութեան:

* Մեհեան եւ բագին բառերուն մեկնութեան եւ ստուգաբանութեան մասին տես Մ. Էմինի գրութիւնը, Recherches sur le paganisme arménien, Paris, 1864, p. 48–49.

1. Ագաթանգեղոս, Նոր հրատ. Լագարդի (**Abh. d. hist. phil. Cl. d. G. d. W. z. Göttingen 1889 XXXV. 1**) էջ 71, 50. Նոյնպէս զարձեալ (էջ 71, 46), προσηγορεύετο δὲ ὁ βωμὸς ὀγδόου σεβάσματος τοῦ εὐφημοτάτου δρακοντοπνίκτου Ἡρακλέους խօսքին մէջ՝ բացայայտիչ յաւելուած մ'է ὁ βωμός բառն, ինչպէս այս տեղ τοῦτο τὸ ἱερόν բառերն: Յոյնն մեհեան եւ բագին բառերը միօրինակ չի թարգմաներ եւ ինքն իրեն համաձայն չէ: Երբեմն մեհեանը կը թարգմանէ ἱερόν.

էջ 452. յԱնահտական ի մեհեանն. — 65, 27. εἰς τὸ τῆς Ἀρτέμιδος ἱερόν.

բացատրող յաւելումներ յաճախ կ'ընէ իրեն թարգմանութեան մէջ։ Փաւստոս կ'որոշէ այս խնդիրը յաջորդ խօսքերով (Գ, ԺԴ). « Ի ձեռաց մեծին Գրիգորի, յաւուրս յորում կործանեաց զբագինսն մեհենիցն Հերակլեայ՝ այս ինքն Վահագնի, որում տեղոյ Աշտիշատն կարդացեալ... »։ Այս խօսքերուս մէջ յայտնապէս կը տեսնուի բազմութիւն մը՝ ո՛չ միայն բագիններու, այլ եւ մեհեաններու։ Սակայն կարելի է դիւրաւ դուրս ելնել այդ հակա-

| | |
|---|---|
| 453. ի դուռն մեհենին. | 65, 31. εἰς τὴν θύραν τοῦ ἱεροῦ. |
| 455. մեհեան անուանեալ սպիտակափառ դիցն. | 66, 70. ἱερὸν λεγόμενον λευκοδόξων δαιμόνων. |
| 457. ի մեծ եւ ի բուն մեհենացն Հայոց թագաւորացն. | 67, 86. ἐν τοῖς μεγάλοις ἱεροῖς τῆς Ἀρμενίας. |
| 457. զգանձս երկոցուն մեհենացն. | 67, 95. τοὺς δὲ θησαυροὺς αμφοτέρων τῶν ἱερῶν. |
| 459. ի Մրհական մեհեանն։ | 68, 16. ἐν τῷ ἱερῷ Ἡφαίστου. |

Մերթ եւս βωμός բառով կը թարգմանէ զայն.

| | |
|---|---|
| 457. ի տեղիս պաշտամանցն յԱնահտական մեհենացն. | 67, 87. ἐν τοῖς τόποις τῶν σεβασμάτων, πουδ ἦν ὁ βωμὸς τῆς Ἀρτέμιδος. |
| 457. զՆանէական մեհեանն. | 67, 94. τὸν τῆς Ἀθηνᾶς βωμόν. |
| 469. Վահէվահեան մեհեանն. | 71, 44. Οὐαυήϊος βωμός. |
| 469. մեհեանն մեծագանձ. | 71, 44. βωμὸς πλουσιώτατος. |
| 469. երրորդ մեհեանն. | 71, 52. ὁ τρίτος βωμός. |

սութեանց միջէն, եթէ ենթադրենք՝ թէ մեհենին ամբողջ շէնքն բաժնուած էր երեք առանձին խորշերու կամ սենեկաց. միջին շէնքն՝ Վահագնի բագինն էր, իսկ երկու կողմնակի խորշերն՝ երկու դիցուհեաց պաշտամանց նուիրուած էին։ Այս կերպով կարելի է մեկնել, թէ Աստղկան նուիրուած խորշն՝ կոչուած լինի միանգամայն սենեակ Վահագնի։

Վահագնի մասին տեղեկութեանց աւելի առատ աղբիւրներ ունինք. որովհետեւ Ագա-

| | |
|---|---|
| 470. յանդիման մեհենացն. | 71, 58. κατ' ἔναντι τῶν βωμῶν. |
| 470. ի .. տեղիս մեհենիցն։ | 71, 59. ἔνθα οἱ βωμοί. |

Սովորաբար Յոյնը կը թարգմանէ βωμός.

| | |
|---|---|
| 452. աւերել անդ ըզբագինսն Անահտական դիցըն.. | 65, 19. καταστρέψαι τὸν ἐκεῖσε βωμὸν τῆς Ἀρτέμιδος. |
| 457. զբագինսն եւս դիցըն Արամազդայ | 67, 83. τὸν βωμὸν Κρόνου. |
| 469. երեք բագինքն. | 71, 50. τρεῖς βωμούς. |
| 470. ի յայս բագինս մնացեալս. | 71, 55. ἐν τοῖς καταλειφθεῖσιν βωμοῖς τούτοις |
| 471. գշինուածս բագնացըն. | 72, 68. τοὺς βωμούς. |

Բայց երբեմն այլ կը թարգմանէ ἱερόν.

| | |
|---|---|
| 455. զի եւ անդ զանուանելոցն զսուտ աստուածոցն զբագինսն կործանեսցեն. | 66, 68. ἵνα κἀκεῖ τῶν ψευδωνύμων θεῶν τὰ ἱερὰ καταστρέψωσιν. |
| 471. եւ ոչ կարացին գդուրս բագնացն գտանել։ | 72, 69. οὐκ ἴσχυσαν ἐξευρεῖν τὰς θύρας τοῦ ἱεροῦ. |

Թանգերգոսէն զատ՝ Մովսէս Խորենացին եւս կարեւոր ծանօթութիւններ կու տայ մեզ նորա նկատմամբ։ Մովսէս պանծալի ըրեր եւ փառաւորեր է այդ աստուածը. որդի է նա իրեն հնարած Տիգրան առաջնոյն, որուն եղբարք են Բաբ եւ Տիրան։ Բնականաբար արժէք չունի այդ ազգաբանութիւնն, ինչպէս նա եւ վահագնի մասին աւանդուած երգին այն ծանօթ փոքր պատառիկն. (Մ. Խոր. Ա, ԼԱ). « վահագն, զորմէ ասեն առասպելք.

Նոյն իսկ Աստուածաշնչի լեզուին կամ գըրութեան մէջ՝ մեհեան նշանակէ հաւատարապէս թէ կուռ կամ դից տաճար, եւ թէ կուռք կամ դրօշեալ եւ սեղան, (այսպէս Հիւբշման. Arm. Gramm. I. S. 194. մեհեան). Նմանապէս բագին բառն այլ միայն սեղան չի նշանակեր, ինչպէս ցուցուեցաւ այս գլխաւորապէս՝ մեր բերած վերոյիշեալ վկայութեանց վերջին օրինակներէն։ Ն. Թովմասէոյ շատ իրաւացի կերպով յաճախ կը թարգմանէ զայն (օրինակ իմն, էջ 108 = 452, 151 = 457, 162 = 469. « եւ բագինն իսկ յայս անուանեալ Ոսկիհատ Ոսկիամօր դիցն », եւ այլն) “simulacro„ պատկեր կամ դրօշեալ, որովհետեւ նոյն բառն թուի նշանակել միանգամայն սեղանը՝ հանդերձ իրեն վերայ գտուած պատկերով կամ արձանով։ Սակայն մեր վերը բերած վկայութեան մէջ, յորում պատմագիրն այնքան ճշդիւ եւ խնամով կը զանազանէ մեհեան եւ բագին բառերը, հարկ է որ այդ երկու բառքն իրենց յատուկ տարբեր նշանակութիւն մ'ունենան։

Երկնէր երկին, (երկնէր) եւ երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծով.
Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն.
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր.
Նա հուր հեր ունէր,
Բոց ունէր մուրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք*։

« Զայս երգելով ոմանց բամբռամբ**, լուաք իսկ ականջօք մերովք։ Ցետ որոյ եւ ընդ վիշապաց՝ ասէին յերգն՝ կռուել նմա եւ յաղթել, եւ կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին։ Այլ ասէին

*Ն. Լամբրոնացւոյ օրինակին մէջ մի քանի մանր տարբերութիւնք կան այս երգիս.

« Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծովն.
Երկն ի ծովուն ունէր եւ զկարմրիկն եղեգնիկ.
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ...»։

** Այդ նուագարանի նշանակութեան մասին հմմտ. հ. Յովս. վ. Գաթըրճեանի «Պատմութիւն Հայոց մատենագրութեան» տետրակը, էջ 30, եւ Մ. Էմինի վերոյիշեալ գրութեան 42 իջին 1[0] ծանօթութիւնը։

զսա եւ աստուածացեալ. եւ անդ յաշխարհին վրաց զօրը չափ հասակի կանգնեալ պատուէին զոհիւք. եւ սորա են զարմք վահունիք »: վահագն ամէն բանէ առաջ օձերու սպանիչ է. եւ « Անոյշ մայրն վիշապաց[1] », պէտք է որ նախնաբար նորա առասպելին հետ վերաբերութիւն ունեցած լինի*: վաղ իսկ արդէն հռչակուած է նա Գողթան դիւցազնական երգերուն մէջ, որ ապա անձնաւորելով եղեր է Մարաց դշխոյ՝ զոր գերի տարաւ Տիգրան. նմանապէս նորա ամուսինն Աժդահակ՝ որ մրրկածին օձ կամ վիշապ էր՝ փոխակերպուելով եղաւ Մարաց Աստիագէս թագաւորն: Մովսիսի Բ գրոց ութերորդ կարեւոր գլխոյն մէջ, յորում արշակունի թագաւորաց հաստատած ազնուականութեան դասակարգութիւնը կը նկարագրէ, կը յիշատակուին նա եւ « որդիքն վահագնի » կամ « վահնու-

1. Խորենացի, Ա. ԼԱ:

* վահագնի մասին ուրիշ առասպել մ'այլ կ'աւանդուի, զոր կը յիշէ Անանիա Շիրակացին իւր **Յաղագս երկնի** գրութեան մէջ (հրատ. Պատկանեանի, Պետերբուրգ, 1877, էջ 48, "Յաղագս կաթին ծրոյ,,). « Դարձեալ ոմանք յառաջնոցն հայոց ասացին, թէ ի խիստ ձմերանի վահագն՝ նախնին հայոց՝ գողացաւ զյարդն Բարշամայ Ասորեստանեայց նախնոյն. զոր եւ մեք սովորեցաք բնախօսութեամբ **Յարդգողի** հետ անուանել »:

նիք », որոնք Վահագնի քրմութիւնը կը ստանան եւ առաջին նախարարութեանց կարգը կը դասուին ։

Թէ հայ ժողովուրդն որպիսի՛ յամառութեամբ յարեալ էր Վահագնի, կը ցուցընէ մեզ Մովսիսի ստուգիւ արժանահաւատ պատմութիւնն. վասն զի մինչև իրեն ժամանակները, որ է՝ քրիստոնէութեան հօթներորդ կամ ութերորդ դարուն մէջ, կ'երգուի եղեր նոյն հեթանոս չաստուծոյն ծննդեան վրայ շինուած երգն ։ Ցաւալի է՝ որ պատմագիրն միայն նոյն դից ծնունդը նկարագրող երգին հարազատ բնագիրը աւանդեր է մեզ, եւ հազիւ թէ անցողակի կը յիշէ վիշապաց դէմ ըրած կռիւներուն երգը, որոց պատճառաւ կոչուեր է նա վիշապաքաղ ։ Սակայն նորա յատուկ ընդաբոյս բնաւորութիւնն կամ պաշտօնն, որ արդէն պայծառ կերպով կը ճանչցուի ծննդեան առասպելին մէջ, աւելի ուշ ժամանակ բոլորովին յայտնի կը լինի ։ Վահագն կը ներկայանայ յիրաւի որսի եւ յաղթութեան դիք ։ Արդէն Գուտշմիդ[1] հաւաքեր է ս. Աթանագինեայ — Վահագնի իրաւանց յաջորդին* — վարուց նշանաւոր կէտերը, որոնք

1. Kl. Schr. III. S. 414.

* Այս առասպելայօղ պատմութիւնը, զոր Թուի

**յայտնապէս կը ցուցնեն զինքը իբրու պաշտպան անտառի, երէոց եւ որսորդութեան։ Գեղեցիկ զրոյցն եղնիկին՝ որ կ՚ընկերէր սրբոյն, եւ նորա տօնախմբութեան օրը յօժարակամ եղնորթ մի կը նուիրէր իրեն իբր ողջակէզ, յայտնի կը ցուցնէ՝ թէ հին հեթանոսական արարողութիւն մ՚էր այն՝ քրիստոնեայ հանդերձի ներքեւ։**

հաստատել նա եւ գրութեանս յարգելի հեղինակն, Սիմ. Մետափրաստեայ աւանդած անհիմն զրուցի մի թիւրիմացութեան արդիւնք է: Յիշեալ պատմագիրն իւր նոր վկայաբանութեան մէջ, ըստ Սուրիոսեան օրինակի, կ՚աւանդէ նոյն զրոյցը հետեւեալ կերպով. "Իբրեւ մերձեցաւ (ս. Աթանագինէս) ի վանսն, ընդ առաջ ել նմա եղն, եւ երկիր եպագ առաջի ոտից նորա. եւ ասէ ցնա սուրբն. Զրկեցար յեղբարց, ահա զրկեսցիս եւ յինէն՝ ի դարմանոցէդ... այլ լիցի զաւակ քո ընծայաբերել զծնունդս իւր ի յիշատակ իմ, որպէս զի ի փառս Աստուծոյ ծախեսցի: Իսկ եղն լալով անկաւ առ ոտս նորա, եւ սուրբ վկայն կնքեալ ի վերայ նորա՝ ասէ. Ե՛րթ խաղաղութեամբ:... Իսկ եղն գայ ի յիշատակի սրբոց վկայիցն՝ մատուցանելով Աստուծոյ զորթն. եւ յորժամ ընթեռնուն զաւետարանն սուրբ, մատուցանէ զայն ի տես ամենեցուն, եւ աղօթէ ծնրադրութեամբ. եւ թողեալ զորթն իւր՝ գնայ խաղաղութեամբ ի տեղի իւր. եւ ծախի որթն ի փառս Աստուծոյ եւ ի պատիւ սրբոց վկայից». (Հմմտ. Հ. Մ. վ. Աւգեր. **Լիակատար վարք սրբոց**, հատ. Դ, ծանօթ. յէջս 358-359): Ինչպէս յայտնի է, այս տեղ **եղնիկը** այլաբանօրէն ըսուած է, եւ պէտք է այնու իմանալ գուցէ ազնուազգի Եւսիբիա տիկինը, որ սրբոյն աղօթիւք դարձաւ հեթանոսութենէ ի քրիստոնէութիւն, եւ իրեն ջերմ պաշտօնասիրութեամբ

Հարկ է յիշատակել նա եւ Տիւր դիքը, զոր ոմանք նոյն համարեր են Տիրի* հետ, որ Պարսից մէջ փայլածու կոչուած մոլորակն է[1]: Սորա մասին ունինք մենք Ագաթանգեղոսի կարեւոր՝ բայց նոյնչափ եւս մթին[2]

առ սուրբն՝ իւր բոլոր կենաց մէջ ամէն տարի սրբոյն նահատակութեանն օրը՝ վկայարանը կ'երթար եւ շատ ընծաներ եւ նուէրներ կը տանէր: Գեղեցիկ կերպով կը պարզէ եւ փաստերով կ'ապացուցանէ զայս հ. Բարսեղ Սարգիսեան, հերքելով Գուդշմիդի կարծիքը, իւր **Ագաթանգեղոսի** ուսումնասիրութեան մէջ (յէջս 215-218):

* Այս դիքս կը համեմատի Յունաց Հերմէս եւ Ապոլոն դից միանգամայն. Կելտաց եւ Սկանդինաւեանց մէջ՝ **Տիր** կամ **Տիւր** (Tyr) պատերազմի ոգի է, ինչպէս եւ **Տի**՝ Ֆրիգոնաց. մեր լեզուին մէջ այլ **տիր**՝ ոյժ, պնդութիւն, քաջութիւն նշանակէ (հմմտ. հ. Ղեւոնդ վ. Ալիշանի հմուտ գիրքը **Հին հաւատք Հայոց**, յէջս 288-292): Սոյն գրքին մէջ կը յիշուի, թէ «Գործոց առաքելոց սրբազան գրոց մէջ այլ՝ ուր յիշուի Հերմէս, (որուն նմանցուցին հեթանոսք զառաքեալն Պաւղոս՝ ճարտարախօսութեանը համար), մեր ձեռագրաց ոմանց լուսանցքը գրուած է **Տիր դիք**:

1. Հմմտ. Hübschmann, arm. Gramm. I. S. 89, N° 1, որ այդ աստուածը երկբայութեամբ միայն կը համեմատէ Տիր դից հետ. ինչպէս նա եւ Լագարդ, arm. Stud. S. 152. Ընդ հակառակն՝ Ագաթանգեղոսի պատմութեան մէջ, յէջ 139, եւ Justi, Iranisches Namenbuch S. 325.

2. «Հաւաստարապէս թէ յունարէնին եւ թէ հայերէնին մէջ ամենէն աւելի խանգարուած տեղերէն մին է». Lagarde, ges. Abh. S. 294.

տեղեկութիւնը, զոր ես ամբողջովին կը դնեմ այս տեղ[1]. « Այն ժամանակ Թագաւորն ինքնին բոլոր բանակին հետ ելաւ Վաղարշապատ քաղաքէն՝ Արտաշատ քաղաքը երթալու համար, որպէս զի կործանէ այն տեղ գտուած Անահիտ դիցուհւոյն բագինները։ Եւ Երազամոյն* կոչուած տեղը, նախ եւ առաջ հան-

1. Ագաթ. ԾԲ. « Ապա ինքն իսկ թագաւորն խաղայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն Անահտական դիցն։ Եւ որ յԵրազամոյն տեղին անուանեալ կարդայր, նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազընդհան պաշտաման Տիւր դից դպրի գիտութիւն (գիտութեան) քրմացն, անուանեալ դիւան գրչի Որմզդի ուսման ճարտարութեան մեհեան »։

* Բանասէր մը (Ս. վ. Ն. իւր Հայ Դիցաբանութիւն գրուածին մէջ) բոլորովին նորօրինակ մեկնութիւն մի կու տայ այդ Երազամոյն եւ յաջորդ երազով բարդուած բառերուն։ Նա այդ երազը կը համարի զանդիկ ազ-էր բառը՝ որ Աստուծոյ սեփական մակդիր է, կ'ըսէ, եւ կը նշանակէ հուր, փայլակ, կայծակ եւ այլն, եւ յետադարձմամբ վանկին եղեր է եր-ազ։ Բռնազբօս մեկնութիւն մ'է այդ, քանի որ Ագաթանգեղոսի բերուած վկայութեան մէջ՝ առանց այդ մեկնութեան դիմելու՝ կը հասկըցուին այդ բառերն իրենց բնիկ իմաստով, այս ինքն է՝ գիտող՝ մեկնող բարի երազոց, գուշակութեանց եւ պատգամներու, որ կ'ընծայուի Տիւր դից, ինչպէս հասկըցեր են ազգային բանասէրք։ Հմմտ. Հ. Յ. Տաշեանի հմուտ գիրքը Ագաթանգեղոս, Վիեննա, 1891, էջ 64, ծանօթ.։

դիպեցաւ (հասարակաց) ճանապարհին վերայ՝ երազները գիտցող եւ երազները մեկնող պաշտաման տեղերուն Տիւր չաստուծոյն, որ քրմաց գիտութեան դպիրն է, եւ կը կոչուի Որմզդի գրագրին դիւան, պերճախօսութեան ուսման տաճար »: Ցոյնն արդէն իսկ խանգարուած վիճակի մէջ կը գտնէ բառերը, ինչպէս յայտնի է թարգմանութենէն.

§ 128 · Ἐπορεύθη μετὰ τοῦ στρατεύματος ἀπὸ Οὐαλεροκτίστης τῆς πόλεως εἰς τὴν Ἀρταξερξοκτίστην, ὥστε καταστρέψαι τὸν ἐκεῖσε βωμὸν τῆς Ἀρτέμιδος ἐν τοῖς λεγομένοις τόποις ὀνειρομούσοις. ἀπιοῦσι δὲ αὐτοῖς ὑπήντησε τόπος προσαγορευόμενος ὀνειροπόλων, ὀνειροδεικτῶν σέβασμα δαίμονος Γραμματέως καὶ γνώσεις ἱερέων. Τρίδις ἐκέκλητο βωμὸς Ἀπόλλωνος. χαρτουλαρίων Διὸς διδαχῆς εὐμαθήτου (ձեռագիրն εὐμάθητος) ἱερέων. Այն օրինակս, որ շատ տեղ կը տարբերի արդէն հայերենէն, « եւ որ... կարդայր » պարբերութիւնը անմիջապէս նախորդ « Անահտական դիցն » բառերուն հետ կարդացած լինելով (առանց ուշ դնելու կէտին), հետեւաբար թարգմանութեան մէջ միացուցեր է զանոնք. այսու աշխարհագրական վրիպակ մի գործեր է թարգմանիչն: Որով-

հետեւ, ինչպէս շատ արդարացի կերպով դի-
տողութիւն կ'ընէ Ն. Թոմմասէոյ իր իտա-
լերէն թարգմանութեան մէջ (էջ 147),
« Արտաշէս Բ՛ կառուցած Ապողոնի մեհեանն՝
Արտաշատ քաղաքէն դուրս կը գտնուէր, Վա-
ղարշապատ տանող ճանապարհին մօտ. մինչ-
դեռ Անահտայ մեհեանն նոյն իսկ քաղաքին
մէջ կը գտնուէր »։ Այս բանս իրօք կը հաս-
տատուի Մովսիսի պատմութենէն (Բ, խթ),
ուր կը յիշատակէ Արտեմիսեայ մեհենին
շինութիւնը՝ Արտաշատ քաղաքին մէջ՝ Ար-
տաշէս (Բ) Թագաւորէն, եւ յետոյ կը յա-
ւելու. « Բայց զԱպողոնի զպատկերն արտա-
քոյ քաղաքին կանգնէ հուպ ի ճանապարհն »
(հասարակաց)։ Ճիշդ այսոր կը համաձայնի նա
եւ Ագաթանգեղոս. Թագաւորն կը ձգէ իւր
բնակավայրը Վաղարշապատ՝ յԱրտաշատ եր-
թալու համար. ճանապարհին վերայ կը
պատահի նա Տիւր դից պատգամատեղւոյն յե-
րազամոյն. ապա ուրեմն այս տեղս կը գըտ-
նուէր ընդ մէջ Կայինեպօլսոյ եւ Արտաշա-
տու։ Այդ պատմութեան շարունակութիւնն
կը հաստատէ նա եւ զայս. որովհետեւ կը
պատմուի այն տեղ, թէ պատգամախօս դից
պաշտօնեայք փախչելով՝ Անահտայ մեհեանը
ապաւինեցան. ապա ուրեմն դէպ ի Արտա-

շատ՝ եւ քաշուեցան, որպէս զի զիցուհւոյն քրմաց հետ միանալով՝ պատերազմը շարունակէին ընդդէմ քրիստոնեայ բանակին ։ Աստի կը հետեւի, թէ « եւ որ... կարդայր » բառերն յաջորդաց հետ պէտք են կապուիլ, ինչպէս կ'ընէ իտալիացի Թարգմանիչն, մինչդեռ Լանգլուա վրիպակաւ կը միացընէ զանոնք նախորդ խօսքին հետ ։ Սակայն շատ հաւանական է թէ այս բառերս փոփոխուեր են իրենց նախկին դիրքէն, որովհետեւ հայ բնագիրն շատ խրթին է ներկայ վիճակին մէջ ։ Յունարէնին Τρίδις անունն պարզաբար հայերէն Տրի դիցին ընդօրինակութիւն մ'է, ինչպէս կ'ենթադրէ Լագարդ (Ագաթանգեղոս էջ. 139). ապա ուրեմն յոյնն սեռական Տրի ձեւը առեր է նախնաբար, եւ ոչ թէ Տիւր դից ։ Պատգամախօս չաստուծոյն պաշտպանութեան ներքեւ հաստատուած իմաստասիրական դպրոցի մասին՝ գտնուելով բաւական բազմաթիւ եւ ծանրակշիռ վկայութիւնք, յայտ է՝ թէ հեղինակն (Ագաթանգեղոսի գրոց) պէտք է լինէր այն խորհրդոց հմուտ անձ մի, թերեւս նոյն ժամանակի քուրմ մի ։ Ինչպէս գիտենք, ս. Գրիգորի վարքն գրուեցաւ նորա ժամանակակից ուսեալ անձէ մի. հարկ է դիտել նա եւ, թէ փոխանակ Հայաստանի մէջ ժա-

մանակաւ գործածուած Արամազդ ձեւին, այս տեղ կը հանդիպինք միշտ սասանեան[1] Որմիզդ ձեւին, « գրիչ Որմզդի »: Աստի կարելի է հետեւցընել, թէ հեթանոս դիցաբան ճարտասանից Պյրոցն՝ միացած Երազամոյնի պատգամատեղւոյն հետ՝ գրեթէ բոլորովին նոր եւ վերջին ժամանակաց հաստատութիւն մ'էր, թերեւս Գ. դարուն սասանեան տիրապետութեան ժամանակ հաստատուած:

Վերջապէս շատ ներքին եւ անձուկ կերպով հայ ժողովրդեան կրօնական զգացման հետ կապուած է՝ Իրանէն բերուած Անահիտա դիցուհւոյն պաշտօնն, զոր Հայք « Անահիտ տիկին » կը կոչեն, Ἄρτεμις δέσποινα. Բնականաբար չենք կարող ընդարձակօրէն քննել եւ հետազօտել՝ թէ ինչ կերպով կազմուեցաւ սոյն դիցուհւոյս յատուկ հայկական պաշտօնն. սակայն հաստատապէս ցուցուած է, թէ բաբելական գաղափարաց ազդեցութեան ներքեւ՝ արեւմտեան նահանգաց մէջ՝ շատ մեծ կերպարանափոխութիւններ կրեր է սոյն դիցուհւոյս նախնական բնիկ

1. Lagarde, ges. Abh. S. 292. « Որմիզդ անունն կը պատկանի քրիստոնեայ Հայաստանը կործանող Սասանեանց »:

պաշտօնն[1]. եւ յիրաւի Հայոց մէջ պաշտուած աստուածուհին զանազան օտար տարերաց բազմապատիկ խառնուրդ մի ցոյց կու տայ։ Նորա գլխաւոր պաշտամանց տեղիք կը գըտնուէին Եկեղեաց գաւառին մէջ, որ ժամանակաւ Ասորւոց բնակած Կատաւոնիա նահանգին կը պատկանէր, եւ Աշտիշատու մէջ, որ նոյնպէս ասորական ծագումն ունեցող Տարօն — Տուրուբերան գաւառին կը վերաբերէր։ Հաւանականաբար դարձեալ կը պաշտուէր նա՝ Թագաւորութեան նախկին մայրաքաղաքին՝ Արտաշատու մէջ. Եւ այս բանս անտի յայտնի է՝ որ դիցուհին միւս երեք գլխաւոր պաշտպան եւ խնամակալ չաստուածներուն հետ միասին կը պաշտուէր, որպէս թէ՝ Արամազդ, Անահիտ եւ Վահագն՝ Հայոց հասարակաց թերափք (penates publici) լինէին, ինչպէս որ կը կարդանք Տրդատ Թագաւորին հրովարտակին մէջ։

Շատ հին վկայութիւններ կան, որոնք կարող ենք ցուցընել՝ թէ Անահտայ պաշտօնն վաղ ժամանակներէ ի վեր գոյութիւն ունէր

1. Spiegel: Erânische Alterthumskunde II, S. 56 ff. — E. Meyer, Gesch. d. Alterthums, I § 450. — Roschers Lexikon d. gr. u. r. Mythol. Sp. 332.

Հայաստանի մէջ ։ Կիկերոն կը պատմէ , թէ երբ Լուկուլլոս Հայոց աշխարհը մտաւ՝ ահագին կրօնական յուզում մի ծագեցաւ տեղացի ժողովրդոց մէջ. « Շատ ժողովուրդներ մեր զօրավարին դէմ գրգռուեցան. որովհետեւ սարսափեցան այն ազգերն , զորս երբէք հռովմայեցի ժողովուրդն չէ ուզած ոչ գրգռել ի պատերազմ եւ ոչ թշնամանել. սակայն ուրիշ ծանր եւ ահագին կասկած մի տիրեր էր այն բարբարոս ազգաց սրտին մէջ , իբր թէ մեր զօրքերն իրենց սահմանները մտեր էին՝ իրենց ամենաճոխ եւ մեծապաս պաշտամամբք յարգուած մեհեանը կողոպտելու համար[1] » ։ Այս ճոխ եւ բոլոր շուրջակայ ազգերէ մեծարուած մեհեանը՝ կը համարի Մոմսէն՝ պարսիկ Նանէայի կամ Արտեմիսի մեհեանը յԵլիմայիս , որ « բոլոր Եփրատեան նահանգին մէջ ամենաճոխ եւ ամենէն աւելի

1. Կիկերոն, Յաղագս իշխանութեան Պոմպէի. « Plures etiam gentes contra imperatorem nostrum concitatæ sunt; erat enim metus iniectus iis nationibus, quas nunquam populus romanus neque lacessendas bello, neque temptandas putavit. Erat etiam alia gravis et vehemens opinio, quæ per animas gentium barbararum pervaserat, fani locupletissimi et religiosissimi diripiendi causa in eas oras nostrum exercitum esse adductum ».

հանդիսիւք հռչակուածն էր[1] »։ Սակայն Ելիմայիսի մեհենին գանձն, — որ կը կարծուի 10000 տաղանդ, — արդէն շատ յառաջ Պարթեւներէն կողոպտուեր էր[2]։ Պէտք է նկատել դարձեալ այն աշխարհագրական ամենամեծ հեռաւորութիւնը, որով կարելի չէ ուրիշ ո՛ եւ է Շօշական մեհենի հետ շփոթել զայն։ Շատ աւելի հաւանական է, ըստ իս, թէ պէտք է այնու հասկնալ Երիզայի մէջ գտնուած Անահտայ մեհեանը. ինչպէս որ սակաւ ժամանակ յետոյ, նոյն Եկեղեաց գաւառին մեհեանն կողոպտեցաւ հռովմայեցի ասպատակներէ։ Պլինիոս կը պատմէ, թէ Անտոնիոսի Պարթեւաց դէմ ըրած պատերազմին միջոց, հռովմայեցի զինուորք նոյն մեհենին ոսկի արձանը փշրեցին եւ հալեցուցին։ Պատմիչն այնպիսի կերպով կը խօսի դիցուհւոյն վերայ, որ դիւրաւ կրնանք գուշակել թէ իւր յիշած մեհեանն նոյն է՝ զոր Կիկերոն կը կոչէ « fanum locupletissimum et religiosissimum »։ Պլինիոս (Բն.

1. Mommsen, R. G. III[7] S. 72.

2. Ստրաբոն ԺԶ, էջ 744. կը պատմէ թէ այդ պատահեցաւ ճիշդ այն արշաւանաց ժամանակ, յորում Արշակ Միհրդատ Ա (✠ 138) նուաճեց Ելիմացւոց թագաւորը։ — Յուստ. ԽԱ. Զ, 8. — Gutschmid: Geschichte Irans, S. 53.

պատմ. ԼԳ, ԻԴ) կը պատմէ[1]. « Կ'ըսուի թէ՝ նախ քան ամէն տեղ, համակ ոսկի արձան եւ ո՛չ թէ դատարկ, որպիսի ընաւ պղնձէ շինուած չէր քան զայն յառաջ՝ կոր եւ թոլորաձոյլ (holosphyraton – δλοσφύρατος) կոչեն, դրուեցաւ Անահտայ մեհենին մէջ, (եւ նշանակեցինք արդէն այդ անունը՝ թէ ո՛ւր կը գտնուի), որ նոյն կողմերու ժողովրդոց ամենանուիրական դիցուհին էր։ Անտոնիոսի ընդդէմ Պարթեւաց մղած պատերազմներուն միջոց կողոպտուեցաւ նա, եւ կը պատմուի Բոնոնիացի հին զօրականի կամ՝ ատենակալի մի խօսքն՝ որ հիւրընկալեր եւ յընթրիս կոչեր էր ըզմեծն Աւգոստոս. որուն երբ հարցուեցաւ՝ թէ իրա՞ւ էր արդեօք, թէ նա՝ որ քան զամենն

1. Plin. N. H. XXXIII, 82: Aurea statua prima omnium, nulla inanitate et antequam ex ære aliqua illo modo fieret, quam vocant holosphyraton, in templo Anætidis posita dicitur, quo situ terrarum nomen hoc signavimus, *numine gentibus illis sacratissimo.* Direpta ea est Antonii Parthicis rebus, scitumque narratur veteranorum unius Bononiæ hospitali divi Augusti cœna, cum interrogaretur, essetne verum eum, qui primus violasset id numen, oculis membrisque captum exspirasse? Respondit enim tum maxime Augustum e crure ejus cœnare, seque illum esse, totumque sibi censum ex ea rapina.

յառաջ սկսեր էր կողոպտել դիցուհւոյն ար-ձանը՝ իսկոյն մեռեր է, կուրցած եւ ան-դամալոյծ եղած. պատասխաներ է նա, թէ նոյն իսկ Աւգոստոս նորա (դիցուհւոյն արձա-նին) սրունքով կ'ընէր այն խնճոյքը*, եւ ինքն էր այն կողոպտող զինուորն, եւ իւր բոլոր ինչքը եւ հարստութիւնը այն յափշտակու-թեամբ ունեցեր էր»։ Այդ հանգամանքն, որով դիցուհւոյն կարծուած պատավճառոյն կամ տուած պատուհասին զրոյցն ծագեր է եւ մինչեւ իսկ Հռովմայ մէջ արձագանգ գտեր է, կը ցու-ցընէ թէ որքան մեծ հռչակ եւ յարգութիւն ունէր նոյն տեղւոյ Անահիտն։ Իսկ թէ ուր կը գտնուէր այն, Պլինիոս (Ե. 83) կ'ակն-արկէ մեզ բուն տեղը յաջորդ խօսքերով. «Կը հոսի (Եփրատ) նախ ի Դերջան (Der-zenen), յետոյ յԱնահտական (երկիրն)՝ բաժ-նելով ի Կապադովկիոյ Հայաստանի գաւառ-ները[1]»։ Այս խօսքերով յայտնապէս կը ցուցընէ՝ թէ Անահտական ըսելով կ'իմանայր

* Այսինքն է, թէ ոսկի արձանը կոտրելով՝ նորա սրունքն նոյն զինուորին վիճակեր էր, եւ այն դրա-մով էր ի պատիւ Աւգոստոսի ըրած խնջոյից ծախ-քըն։

1. Plinius V. 83. Fluit (sc. Euphrates) Derzenen primum, mox Anæticam, Armeniæ regiones a Cappadocia excludens.

Եկեղեաց գաւառը, ինչպէս կը կոչէ զայն նաեւ Կասսիոս Դիոն[1], « ἡ 'Αναΐτης χώρα ». Այսպէս նաեւ Ստրաբոն, որ շատ հմուտ էր Փոքր Ասիոյ իրերուն, կը յիշատակէ Եկեղեաց գաւառին մեհեանը՝ իբր կեդրոն Անահտայ պաշտամանց. սակայն պաշտաման հետ կապուած նուիրական սպասաւորաց կարգն եւ ազնուականներու դստերաց պղծութիւնք կը ցուցընեն յայտնապէս՝ թէ օտար տարերք, որք ամենեւին իրանեան չէին, խառնուեր էին Հայաստանի մէջ Անահտայ պաշտաման հետ: Ստրաբոն (ԺԱ, 532) կ'ըսէ. « Պարսից բոլոր սրբութիւնները թէ՛ Մարք եւ թէ Հայք կը պատուեն. բայց ի վեր քան զամենայն Հայք կը պատուեն Անահիտը, որուն ուրիշ տեղեր եւս տաճարներ կանգնեցին, եւ մանաւանդ Եկեղեաց (նահանգին) մէջ: Այն տեղ սպասաւորս եւ աղախնայս կը նուիրեն անոր. եւ այս զարմանալի չէ, այլ եւ նոյն ազգին ազնուականք անոր կ'ընծայեն իրենց կոյս դստերքը, որոնք ըստ օրինի (սովորութեան) շատ ժամանակ պղծութեանց տալով իրենք զիրենք դիցուհ-

1. Cassius Dio, 36, 48: τὴν 'Αναΐτιν χώραν τῆς τε 'Αρμενίας οὖσαν καὶ θεῷ τινι ἐπωνύμῳ ἀνακειμένην. 53.

**ւոյն մօտ (մեհենին մէջ)*, յետոյ կ՚ամուսնանան, եւ այնպիսեաց հետ կենակցիլը ոչ ոք անարժան բան կը համարի[1] »։**

* Ստրաբոնի տուած այդ տեղեկութիւնը քանասէրներէն ոմանք իբր ստոյգ կ՚ընդունին, որ ըստ իրենց մտաց հակառակ չերեւիր, եթէ նկատենք որ հեթանոսութեան ժամանակ ամենուրեք գաղափար՝ չի կայր այն բարձր եւ վսեմ կուսութեան եւ զգաստութեան, զոր քրիստոնէութիւնն վարդապետեց մարդկութեան: Իսկ այլք, Ագաթանգեղոսի մէջ սոյն դիցուհւոյս մասին տուած վկայութեան վերայ հաստատուած, ուր կը կոչուի նա «մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան» եւ այլն, բացէ ի բաց կը մերժեն Ստրաբոնի վկայութիւնը, ինչպէս Էմին իւր վերոյիշեալ գրութեան մէջ (էջ 12). «Եթէ այդպիսի անհամեստ սովորութիւն մի լինէր հեթանոս հայոց մէջ, կ՚ըսէ, անպատճառ հայ քրիստոնեայ մատենագիրք պիտի յիշատակէին զայն նողկանօք, որպէս զի աւելի եւս խորշելի ընէին նորադարձ հաւատացելոց՝ հեթանոս կրօնից չաստուածները եւ պաշտամունքը»:. Դարձեալ, յայտնի է այդ այն հանգամանքէն, որ երբ Տրդատ՝ դրուատելով Անահտայ պաշտաման սրբութիւնը՝ կը կոչէ զնա «մայր ամենայն զգաստութեանց», ս. Գրիգոր կը լռէ այդ մասին եւ բնաւ մեղադրանաց ոչ մի խօսք չի ըսեր. մինչ, եթէ ճիշդ լինէր Ստրաբոնի պատմածն, այն ժամանակ զօրաւոր ապացոյց մի պիտի լինէր այն ս. Գրիգորի համար՝ հեթանոս կրօնից եւ դից զազրութիւնքը եւ ստութիւնը ցոյց տալու, ինչպէս որ յետոյ կը խորհրդածէ նա եւ պր. Գելզեր:

1. Strabo, XI, 532 C: Ἅπαντα μὲν οὖν τὰ τῶν Περσῶν ἱερὰ καὶ Μῆδοι καὶ Ἀρμένιοι τετιμήκασι, τὰ δὲ τῆς Ἀναΐτιδος διαφερόντως Ἀρμένιοι, ἔν τε ἄλλοις ἱδρυσάμενοι τόποις, καὶ δὴ καὶ ἐν Ἀκιλισηνῇ.

Դիցուհւոյն յայտնապէս բոլորովին նոր գրոյցը կ'աւանդէ մեզ Պրոկոպիոս։ Անահտայ եւ Մայի ամենէն աւելի նշանաւոր մեհեանք կը պարծին՝ իբր թէ Որեստէս եւ Իփիգենի շինած են զանոնք, եւ կը հաստատեն՝ թէ Տաւրոպոլսոյ հրաշագործ սպատկերն ուրիշ տեղէ բերուած է անդ. այսպէս քան զամէնն յառաջ՝ Սարոսի վերայ շինուած Կոմանա քաղաքն Կապպադովկիոյ (Ստրաբոն, ԺԲ, 535, Գ[1]), եւ Հերոկեսարիա՝ Լիւդիոյ

ἀνατιθέασι δ'ἐνταῦθα δούλους καὶ δούλας. καὶ τοῦτο μὲν οὐ θαυμαστόν. ἀλλὰ καὶ θυγατέρας οἱ ἐπιφανέστατοι τοῦ ἔθνους ἀνιεροῦσι παρθένους, αἷς νόμος ἐστὶ καταπορνευθείσας πολὺν χρόνον παρὰ τῇ θεῷ μετὰ ταῦτα δίδοσθαι πρὸς γάμον, οὐκ ἀπαξιοῦντος τῇ τοιαύτῃ συνοικεῖν οὐδενός.

1 Τὰ δὲ ἱερὰ ταῦτα δοκεῖ Ὀρέστης μετὰ τῆς ἀδελφῆς Ἰφιγενείας κομίσαι δεῦρο ἀπὸ τῆς Ταυρικῆς Σκυθίας, τὰ τῆς Ταυροπόλου Ἀρτέμιδος. ἐνταῦθα δὲ καὶ τὴν πένθιμον κόμην ἀποθέσθαι, ἀφ' ἧς καὶ τὸ ὄνομα τῇ πόλει. Διὰ μὲν οὖν τῆς πόλεως ταύτης ὁ Σάρος ρεῖ ποταμὸς, καὶ διὰ τῶν συναγκείνων τοῦ Ταύρου διεκπεραιοῦται πρὸς τὰ τῶν Κιλίκων πεδία, καὶ τὸ υποκείμενον πέλαγος (Strabo, XII, 535, C). «Տաւրոպոլսոյ Անահտայ այդ սրբութիւնները կը կարծուի թէ Որեստէս իւր Իփիգենի քրոջ հետ բերեր է այս տեղ Տաւրոսեան Սկիւթիայէն. ուր եւ զետեղեր է սգաւոր գէսը, յորմէ կոչուեր է եւ քաղաքն (Κόμα α, իբր Գիւսային)։ Սոյն քաղաքին միջէն կ'անցնի Սարոս գետն, որ Տաւրոսի լերանցամէջներէն (անցնելով) կը տարածուի Կիլիկիոյ դաշտորէից վերայ եւ կը թափի մօտակայ ծովը»։

մէջ (Պաւսանիաս, Գ, 16, 8. Է, 6, 6)։ Սակայն հայկական գրոյցն քայլ մի եւս կ՚ընէ եւ կը ճոխացընէ ուրիշ ազգաց գրոյցները ։ Կիւ՞ն Անահտայ մեհեանն ի Տաւրոս (τὸ ἐν Ταύροις ᾿Αρτέμιδος ἱερὸν)՝ կը դնէ Տաւրոսեան Թերակղզիէն դուրս դէպ ի Հայաստան ։ Պրոկոպիոս կը գրէ այս մասին (Յաղագս Պարս. պատերազմ. Ա, 17, էջ 84). « Անտի կը թափի գետն՝ Եկեղեաց կոչուած գաւառը, ուր էր Տաւրոսեան Անահտայ մեհեանն, յորմէ կ՚աւանդուի փախած Ագամեմնոնի (դուստր) Իփիգենիին՝ Որեստեայ եւ Պիւլադեայ հետ միասին՝ տանելով իրենց հետ Անահտայ պատկերը ։ Կայ մինչեւ ցարդ Կոմանա քաղաքին մէջ նա եւ ուրիշ տաճար մի, որ զատ է Տաւրոսի մէջ եղածէն[1] »։

1. ᾿Ενθένδε τε ὁ ποταμὸς πρόεισιν εἰς τὴν Εκελεσηνὴν καλουμένην χώραν, οὗ δὴ τὸ ἐν Ταύροις τῆς ᾿Αρτέμιδος ἱερὸν ἦν, ἔνθεν λέγουσι τὴν ᾿Αγαμέμνονος ᾿Ιφιγένειαν ξύν τε ᾿Ορέστῃ καὶ Πυλάδῃ φυγεῖν τὸ τῆς ᾿Αρτέμιδος ἄγαλμα φέρουσαν. ὁ γὰρ ἄλλος νεὼς ὅς δὴ καὶ ἐς ἐμὲ ἐστιν ἐν πόλει Κομάνῃ, οὐχ ὁ ἐν Ταύροις ἐστίν (Procop. de bello Persico, I, 17 p. 83).

2. De bello Gothico IV, 5, p. 480. Καίτοι ᾿Αρμένιοι ἐν τῇ παρ᾿ αὐτοῖς ᾿Ακιλισηνῇ καλουμένῃ χώρᾳ τὸν νεὼν τοῦτον γεγονέναι φασὶ καὶ Σκύθας τηνικάδε ξύμπαντας καλεῖσθαι τοὺς ἐνταῦθα ἀνθρώπους. « Թէ եւ Հայք կը հաստատեն՝ թէ այդ տաճարն եղեր է իրենց Եկեղեաց կոչուած գաւառին մէջ, եւ թէ այն ժամանակ Սկիւթացի կը կոչուին եղեր այն տեղեաց բոլոր մարդիկն »։

Պրոկոպիոս շարունակելով խօսքը կը պարզէ յետոյ, թէ Որեստէս՝ իւր քրոջ հետ փախչելով՝ կառոյց նախ Պոնտական եւ յետոյ Կապպադովկիոյ Կոմանա քաղաքները։ Պատգամն մարգարէացեր էր՝ թէ իրեն հիւանդութիւնն պիտի բժշկուէր միայն այն տեղւոյն մէջ, որ Տաւրոսի մայր մեհենին նմանութիւնը ունենար։ Այս բանս կը յարմարէր նա եւ Սարոսի վերայ գտնուած Կոմանայի, ըստ կարծեաց Պրոկոպիոսի. (Անգ. էջ 84). « Զօր տեսնելով յաճախ՝ սաստիկ զարմացեր եմ, եւ կը թուէր ինձ լինել Տաւրոսի մէջ (յԵրիզա). որովհետեւ այս լեռն այլ կը նմանի իրօք այն լերան, սա եւս Տաւրոս լինելով. նոյնպէս Սարոս գետն Եփրատայ նմանութիւնն ունի »։ Ըստ այսմ կրնայինք ենթադրել, թէ պարզապէս Պրոկոպիոսի հնարած կեղծիք մի լինէր այն. սակայն մի այդպիսի ենթադրութեան հակառակ կ'ելնէ նոյն հեղինակին միւս համազօր տեղին[2], ուր յայտնապէս կը յիշէ զՀայս՝ իբր երաշխաւորս Եկեղեաց մէջ գտնուած Տաւրոսեան Անահտայ նախահայրենեաց աւանդութեան։ Թէ այս նոր գրոյցս որչափ սակաւ կարեւորութիւն կու տայ հին նախկին աւանդութեան, յայտնի է այն հանգամանքէն, թէ

այս տեղ նախ եւ առաջ Պոնտական կոմանան կը շինուի. մինչդեռ Ստրաբոն բացայայտ կերպով կ'ըսէ (ԺԲ, 557, Գ), թէ Պոնտականն լոկ երկրորդական հաստատութիւն մ'էր Կապպադովկիոյ կոմանային ։ Դարձեալ ամբողջ կազմութիւնն ոչ սակաւ նշանաւոր է՝ իբր գիտնական յարմարութիւն մի յունարէնի տեղեակ հայ գրչի մի ։ Եթէ կարելի լինէր համարձակել ենթադրութիւն մ'ընել , կրնայինք զուցէ ընդունիլ՝ թէ Ոլիւմպիոս կամ Ուղիւպ անեցին իւր Մեհենական պատմութեանց մէջ հաստատեր է՝ թէ Երիզան եղեր է մայր սրբատեղի երկուց կոմանայից ։

Երրորդ դարու կրօնական պաշտամանց նըկատմամբ՝ ունինք Ագաթանգեղոսի մէջ մանրամասն եւ վաւերական տեղեկութիւններ ։ Բնիկ տեղացւոց եւ ուխտաւորաց ջերմեռանդ պաշտօնասիրութիւնն փութով կանգնեց դարձեալ Հռովմայեցւոց կործանած դիցուհւոյն արձանը. զէթ երեք հարիւր տարի յետոյ ս. Գրիգոր առիթ կ'ունենայ դարձեալ կործանելու Անահտայ ոսկի արձանը ։ Ագաթանգեղոս կը պատմէ (տպագր. Վենետիկոյ, 1835, յէջ 587). « Եւ ապա յետ այսորիկ անդէն ի սահմանակից ի գաւառն յԵկեղեաց եկանէր. եւ անդ երեւեալ դիւացն ի մեծ եւ

ի բուն մեհենացն Հայոց Թագաւորացն ի տեղիս պաշտամանցն, յԱնահտական մեհենացն[1] յԵրէզն աւանին, ի նմանութիւն մահանաւոր զօրու ժողովեալ դիւացն մարտընչէին, եւ մեծագոչ բարբառով զլերինսն հընչեցուցանէին։ Որք փախստական լինէին, եւ ընդ փախչելն նոցա՝ կործանեալ բարձրաբերձ պարիսպքն հարթեցան։ Եւ որք դիմեալ հասեալ զգաստացեալ* զօրօքն սուրբն Գրիգոր Թագաւորաւն հանդերձ, փշրէին զոսկի պատկերն Անահտականաց դիցն. եւ ամենեւին զտեղին քանդեալ վատնէին, եւ զոսկին եւ զարծաթն աւար առեալ»։

Երկրորդ ոսկի պատկեր մ՚այլ դիցուհւոյն կը գտնուէր ի Տարօն, ուր Վահագնի եւ Աստղկան հետ կը կազմէր Աշտիշատայ երրորդութիւնը[2]։ Բացատրութեան ճոխութիւնն[3]

1. Թէպէտ աստ յոգնակի ձեւն գործածուած է, բայց յետոյ խօսքն դիցուհւոյն միակ պատկերին վերայ է։

* Սոյն բառովս՝ զգաստացեալ (զօրօքն), զոր հեղինակն տարակուսելով կը թարգմանէ «աշխոյժ, զուարթ, արթուն» (munter), կ'ակնարկէ աստ Ագաթանգեղոս «նորադարձ, նորահաւատ, կրօնիւք եւ բարոյիւք զգաստացեալ, քրիստոնեայ» զինուորները։

2. Տեսանք արդէն յառաջն սոյն պատկերին նկարագրութիւնը։

3. Ագաթանգեղոս. Վենետիկ, 1855, էջ 603.

ենթադրել կու տայ մեզ, թէ դա՝ ոսկեմօր վերայ շինուած հին սրբազան երգի մի հատուածիկն էր։ Անահտայ երրորդ նշանաւոր մեհեան մի եւս կը գտնուէր, ըստ Ագաթանգեղեայ[1], հին մայրաքաղաքին Արտաշատի մէջ*։ Թէպէտ եւ մեր աղբիւրն առանձին յիշատակութեան արժանի բան չաւանդեր այս տեղեաց մէջ եղած պաշտաման մասին, սակայն վերջինն այլ ժամանակաւ շատ կարեւոր մեհեան մի եղած է, որուն քրմաց զօրութիւնն գլխաւորապէս յայտնի է իրենց ցուցած ջերմ եւ մոլեռանդն դիմադրութեամբ արքայական բանակին։ Քրմաց խումբն չարաչար յաղթահարուած՝ մեհեան—դղեկին մէջ պաշտպանեցաւ, որուն պարիսպներէն սկսան

« Մեհեանն ոսկեմօր ոսկեծին դից » եւ « բագինն ոսկիհատ ոսկիամօր դիցն ». յոյնն ունի. (βωμὸς) χρυσῆς μητρὸς χρυσογεννήτων θεῶν χρυσόκοκκος: χρυσῆς μητρὸς τῶν δαιμόνων.

1. Անդ. էջ 581։

* Անահտայ կամ Արտեմեայ այդ պղնձաձոյլ ոսկեզօծ անդրին, զոր բերաւ Յունաստանէն Արտաշէս Ա. նախ եւ առաջ Արմաւիր քաղաքին մէջ կանգնեցին վահեւունի քուրմք՝ Ապողոնի արձանին հետ. յետոյ Երուանդ թագաւորն ի Բագարան փոխադրեց զանոնք ուրիշ չաստուածոց հետ, իբրու Պանթէոն մ'ընելով նոյն աւանը, որ Ախուրեան գետին եզերքը կը գտնուէր. անկից այլ իր օրինաւոր յաջորդն Արտաշէս Բ փոխադրեց յԱրտաշատ. (տես. Հին հաւատք Հայոց, էջ 267)։

կռուիլ յուսահատաբար, եւ « նետս անոյժս եւ քարաւլէժս, թանձրաթափ (ի վերուստ ի շինուածոցն) ի խոնարհ զմարդկաւն ցնդէին »։ Այս բանէս սաստիկ զարհուրեցան ի սկզբան նորահաւատ մարդիկն. սակայն (քրիստոնեայ) զունդքն քաջալերուած ի ս. Գրիգորէ՝ սաստիկ եւ բուռն յարձակմամբ տիրեցին մեհենին, եւ ըստ սովորութեան քանդեցին զայն։

Վերջին մեհեան մի եւս կը յիշէ Փաւստոս, ուր կը բնակէր յոյն ճգնաւորն Եպիփան. « Եւ նստէր սա ի մեծի լերինն ի տեղի դիցն՝ զոր կոչեն աթոռ Նահատայ[1] »։ Վենետկոյ հրատարակութեան մէջ տպուած է « Անահտայ », թէ եւ ամենայն գրչագիր օրինակք ունին « Նահատայ* », ինչպէս կը ծանուցանեն հրատարակիչք, որ կը համապատասխանէ ճշդիւ պարսիկ « Նահիտ » ձե-

* Ինճիճեան իւր Ստորագրութիւն հին Հայաստանի գրքին մէջ (Յաւելուած, էջ 507) վրիպակ կը համարի Նահատայ գրութիւնը· սակայն պատճառ մը չի կայ այդպէս համարելու, մանաւանդ որ Փաւստոսի ամենայն գրչագիրք առ հասարակ, առանց բացառութեան, այդպէս կը գրեն եւ միւս կողմանէ նոյն գրոց մէջ ուրիշ տեղ այլազգ յիշատակուած չի կայ նոյն անունն, որով զայս ուղղէինք կամ վրիպակ համարէինք։

1. Փաւստոս. Ե, ԻԵ. Վենետիկ, 1889, էջ 224։

ւին[1]։ Երբոր ս. Ներսէսի մահուան լուրը առին, իսկոյն Եպիփան եւ Շաղիտա ճգնաւորք գնացին Թիլ գիւղը, Եկեղեաց գաւառին մէջ, ուր կը թաղուէին հայոց կաթողիկոսք. արդ հարկ է որ «Նահատայ» կամ «Անահտայ աթոռն*» այս տեղերուս մօտերը գտնուէր**։

1. Համմտ. Noeldeke Tabari S. 4, Nr. 2. — Spiegel Er. Alt. II, S. 54, Nr. 1.

* Մ. Էմին, իւր Recherches sur le paganisme arménien գրքուկին մէջ (էջ 14), Աշտիշատու Անահտայ մեհեանը նոյն կը համարի **Անահտայ աթոռ** կոչուածին հետ՝ իւր հետեւեալ խօսքերով. «Selon Faustus, Achtichat était surnommé: le trône d'Anahid». Սակայն յայտնապէս վրիպակ է այդ, զի Աշտիշատ կը գտնուի Տարօնոյ մէջ (ի Տուրուբերան). «ի սնարս լերինն Քարքեայ, ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի» (Ագաթ. ՃԺԴ, էջ 603). մինչդեռ **Անահտայ աթոռ** կոչուած լեռն կը գտնուի Ծոփաց գաւառին մէջ, «ըստ ոմանց հիմակ Քէօշմէր կոչուածն, անշուշտ դիցուհւոյն մեհենի կամ պատկերի մը համար». (Համմտ. Հ. Ղ. Ալիշան, **Հին հաւատք Հայոց**, էջ 267–8)։

** Բաց ի վերոյիշեալ տեղերէն, կայ նաեւ **Դարբնաքար** կամ **Դարբնաց քար** կոչուածն, Կանգուար բերդին մօտ. Անձեւացեաց աշխարհին մէջ, ուր կը պաշտուի եղեր Անահտայ կուռքն. զայս կը յիշէ Մ. Խորենացին, իւր առ Սահակ Արծրունի գրած թղթոյն մէջ (**Յաղագս պատկերի Տիրամօր**, էջ 294, տպագր. վենետիկոյ, 1895). «Եւ անուանելն զանուն տեղւոյն այնորիկ **Դարբնաց քար**. հասեալ սուրբ առաքեալն Աստուծոյ (Բարթողոմէոս) անդ,

Դարձեալ նոյն ինքն Ագաթանգեղոս կարեւոր եւ ստոյգ տեղեկութիւններ կ'աւանդէ մեզ, թէ Գ. դարու մէջ ի՛նչ կերպով եւ ի՛նչ նուէրներ կ'ընծայուէին դիցուհւոյն[1]. « Յառաջին ամին Տրդատայ արքայութեանն Հայոց մեծաց, խաղացին եկին հասին յԵկեղեաց գաւառ, ի գիւղն Երիզա, ի մեհեանն Անահտական, զի անդ զոհս մատուսցեն. եւ իբրեւ կատարեցին զգործն անարժանութեան, իջին բանակեցան առ ափն գետոյն, զոր Գայլն (Λύκος) կոչեն։ Իբրեւ եկն եմուտ ի խորան անդր եւ յընթրիս բազմեցաւ, եւ իբրեւ ընդ գինիս մտին, հրաման ետ թագաւորն Գրիգորի՝ զի պսակս եւ թաւ ոստս ծառոց՝ նուէրս տարցի բագնին Անահտական պատկերին »։ Երբոր Գրիգոր յանձն չառաւ կատարել դիցուհւոյն այդ պաշտօնը կամ նուէրը, սաստիկ զայրացաւ թագաւորն, եւ սպառնացաւ իրեն բանտ, կապանք եւ մահ (անդ. էջ 47), « եթէ ոչ առնուցուս յանձն, ըսելով առ Գրիգոր, դիցն պաշտօն մատուցանել, մանաւանդ այսմ մեծի Անահտայ

հալածեաց զդարբինսն զգործօնեայս չարին, եւ զկուռսն փշրեաց որ յանուն Անահտայ էր». եւ այլն։

1. Ագաթանգեղոս. Վենետ. 1835, էջ 45։

տիկնոջ՝ որ է փառք ազգիս մերոյ եւ կեցուցիչ, զոր եւ Թագաւորք ամենայն պաշտեն, մանաւանդ Թագաւորն Յունաց, որ է մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, եւ ծնունդ է մեծին արին Արամազդայ »։ Այս չափէ դուրս մեծարանքս առ մայրն հասարակաց (Անահիտ)՝ շատ նորօրինակ բան է յետին դարուց հեթանոսութեան համար։ Հարկ է դիտել, թէ անարիւն նուէրներ, ծաղկանց եւ թաւ ոստոց պսակներ կ՚ընծայուէին դիցուհւոյն. դարձեալ, դիտողութեան արժանի է, որ ս. Գրիգորի վարուց պատմութեան մէջ բնաւ չի տեսնուիր հետք Ստրաբոնի ակնարկած այն պղծութեանց, որք կը կատարուէին ի պատիւ դիցուհւոյն։ Որ ինչ արդէն բազմաթիւ օրինակներով ցուցուած է, թուի թէ Հայաստանի նկատմամբ եւս կատարուեր է. այսինքն է՝ թէ ճշմարիտ աստուածապաշտից, Աղեքսանդրիոյ հրէից, եւ մանաւանդ քրիստոնեայ ջատագովներու յանդիմանութիւնք խոր ազդեցութիւն ըրեր էին ժողովրդեան հեթանոս մասին վերայ։ Եւ յիրաւի, կը տեսնենք որ՝ յետ Քրիստոսի Գ եւ Դ դարուց մէջ՝ հեթանոսութիւնն շատ աւելի բարոյական էր քան նախկին դարերում։ Մեր այս կարծեաց անուղղակի կեր-

պով կը նպաստեն նա եւ ս. Գրիգորի խօսքերն, որովք կը սահմանէ նա Անահիտ դիցուհւոյն էութիւնը՝ քրիստոնեայ ջատագովներու յաջող եւ կորովի բացատրութեամբ մի. « Այլ զոր դուք կոչես մեծ Անահիտ տիկին, լեալ իցեն արդեօք մարդիկ ոք յայնժամ երբեմն ժամանակի. քանզի դիցապաշտ կախարդութեամբ զմարդիկն՝ որ յայնժամն էին՝ ցնորիւք կերպս ի կերպս լինելով դիւացն, հաւանեցուցին մեհեանս շինել, եւ պատկերս կանգնել, եւ երկիր պագանել, որ ոչ իսկ են, ոչ չար եւ ոչ բարի ինչ կարեն առնել, եւ այլն ». ս. Գրիգոր այս կերպով կը շարունակէ եւ կը ճոխանայ հեթանոս չաստուածոց ոչնչութեան վերայ։ Յայտ է թէ, եթէ Անահտայ պաշտամանց մէջ յիրաւի ո՛ եւ է կերպով մեղադրանաց արժանի բան մի լինէր բարոյականի մասին, սուրբ Գրիգոր չէր կարող լռել, եւ թագաւորին առջեւ մէջ պիտի բերէր իբրու զօրաւոր ապացոյց մի, թէ անցեալ ժամանակաց կախարդութիւնք հրապուրեր եւ ձգեր էին զմարդիկ այնպիսի սոսկալի գարշութեանց եւ ոճիրներու մէջ։ Նորա լըռութիւնն այս մասին շատ մեծ նշանակութիւն ունի, եւ նոյն իսկ թուի այդու վկայել՝ թէ Գ․ դարուն Երիզայի մէջ ի պատիւ դից

զազրոտի գործոց գաղափար անգամ չի կայր. որով եւ Անահիտ յիրաւի ամենէն աւելի պատուեալ եւ մեծարեալ դիցուհին էր հնոյն Հայաստանի ։ Այս պատճառաւ եւս աններելի եղեռն կը համարուի ս. Գրիգորի յանձն չառնուլն այնոր պաշտօնատար լինել. առ որ այսպէս կը խօսի Տրդատ Թագաւորն. « Վասն որոյ ես խնայեցի ի քեզ՝ իբրեւ ի վաստակաւոր, զի եկեսցես ի կարգ ուղղութեան պաշտել զդիսն. զորոց դու առեալ զնոցա պատիւն՝ ումպէտ կարդաս արարիչ. եւ որ են իսկ ճշմարտիւ արարիչ, թշնամանես եւ ըզմերն Անահիտ, որով կեայ եւ զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց. եւ ընդ նմին եւ զմեծն եւ զարին Արամազդ՝ զարարիչն երկնի եւ երկրի, ընդ նմին եւ զայլ աստուածսն կոչեցեր անշշունչս եւ անմռունչս[1] »։

Անահտայ հետ կը փակուի իրանեան աստուածոց շրջանն։ Եթէ այս դից պաշտաման յատուկ բնաւորութիւնը նկատենք, պիտի տեսնենք որ դիտողութեան արժանի տարբերութիւն մի կայ սոցա եւ իրանեան կրօնական պաշտամանց միւս երկրորդական ճիւղերուն մէջ, որք գոյութիւն ունէին ի փոքր

1. Ագաթանգեղոս. էջ 56–57։

Ասիա, եւ մանաւանդ Կապպադովկիոյ եւ Լիւդիոյ մէջ*։ Անդ միշտ ստոյգ գիտակցութեամբ չեշտուած է սոյն կրօնական պաշտամանց պարսկական ծագումն։ Պոնտական Կապպադովկիոյ Զելա քաղաքին մէջ կը պաշտուէր երրորդութիւն մի համաբագին դից (συμβόμων θεῶν), Անահտայ հետ ուրիշ երկու չաստուածք՝ որք յայտնապէս պարսիկ դիք (Περσικοὶ δαίμονες) կը կոչուին[1]. վասն զի մի եւ նոյն գրուցին ուրիշ աւանդութեան մի համեմատ, պարսիկ զօրավարներ՝ եւ նոյն իսկ Կիւրոս՝ կը համարուին նոյն կրօնից հիմնադիրք (Ստրաբոն, ԺԱ, 512)։ Լիւդիոյ մէջ, ուր կը գտնուէին պարսիկ գաղթականութիւնք (Ստրաբոն, ԺԳ, 629, Գ), կը յիշատակուին պարսիկ Լիւդացւոց մեհեաններ (Λυδοῖς ἐπίκλησιν Περσικοῖς. Պաւսան. Ե, 27, 5), ի Հերոկեսարիա եւ ի Հիւպեպա**։ Լիւդացւոց Անահտական Արտեմիսն (Ἄρτεμις Ἀ-

* Անահտայ իբրու պաշտօնատեղի կամ սրբավայր կը յիշէ Մեծ. Հ. Ղ. Ալիշան նա եւ զնկրատան Մարաց եւ Գերմանիկուպոլիս (այժմու Մարաշ) քաղաքն (Համմտ. Հին հաւատք Հայ. էջ 267)։

1. Համմտ. Strabo XV. 733, C. πολλὰ δὲ καὶ ἐν τῇ Καππαδοκίᾳ τῶν Περσικῶν θεῶν ἱερά.

** Քաղաք Լիւդիոյ՝ որ կը գտնուէր ընդ մէջ Վիշապ լերան (Dracon mons) եւ Կաւստեր գետոյ։

ναιῖτις[1]) յայտնապէս նշանակուած է իբր պարսկական Արտեմիս կամ Նահիտ[2]. մինչդեռ Հայաստանի մէջ բոլորովին այլազգ է։ Դարձեալ Կապադովկիոյ, մէջ կարգէ դուրս բազմութիւն մի կար մոգերու. եւ ականատես վկայ մ'է որ կը պատմէ մեզ, թէ կը գտնուէին այն տեղ ատրուշանք (πυραιθεῖα) եւ պարսիկ մոգերու կրօնք եւ ծէսք[3]. ուրիշ մատենագիր մի եւս կը վկայէ՝ ճշդիւ նկարագրելով մեզ զայն՝ թէ մի եւ նոյն ծէսք կը կատարուէին նա եւ Լիւդիոյ մէջ[4]. մինչդեռ Հայաստանի մէջ բնաւ չենք գտներ ո՛չ մոգեր եւ ոչ կրակի պաշտօն։ Կապադովկիոյ եւ Լիւդիոյ մոգերն կրնան հաւանականօրէն յառաջ եկած լինել հարազատ մազդեզական կրօնքէն. բայց Հայաստանի մէջ Իրանէն փոխ առնուած աւանդքն կամ աղանդքն յամենայն դէպս օտար է եւ բոլորովին հակառակ այնոր*։ Եր-

1. Pausan. III, 16, 8.
2. Persica Diana. Tac. Ann. III, 62. — Ἱερὸν Περσικῆς Ἀρτέμιδος. Paus. VII, 6, 6.
3. Strabo, XV 733 f.
4. Pausan. V, 27, 5.

* Այս մասին խօսելով Մեծ. Հ. Ղ. Ալիշան (Հին հաւատք Հայոց, էջ 265–6) կ'ըսէ. «Յայտնի է որ ամէն ազգէ աւելի հայք էին անահտապաշտք, եւ ըստ Քրայցէր (Creutzer) հմուտ դիցաբանի, հայոց

քեմի փոփոխուած եւ ազգային կերպարանք առեր է, ինչպէս կը տեսնուի այս ի մասնաւորի Վահագնի հանգամանաց մէջ, երբեմն այլ տարբեր ծագում ունեցող տարերաց հետ միացեր է ։ Այս տեղ ստուգիւ տեսակ մի խառնուրդ կը տեսնենք չաստուածներու, ինչպէս կը պատահինք հնդիկ–սկիւթացի իշխանաց դրամներուն վերայ ։ Արդ եթէ համարինք, թէ յիրաւի սոքա ընդ մէջ Աքեմենեան եւ Սասանեան հարստութեանց եղած շրջանին ժամանակակից ամենէն աւելի կարեւոր յիշատակարանք են, եւ եթէ նկատենք դարձեալ, թէ Հայաստանի մէջ ամենայն ինչ որ իրանեան է՝ յատկապէս պարթեւական է, ապա աւելի եւս հաւանականութեամբ պիտի կարող լինինք ամենահին պարթեւական շրջանին մէջ դնել իրանեան դից մուտն ի Հայաստան ։ Թէ եւ յետնագոյն արշակունի թագաւորաց ժամանակ ազգային եւ կրօնական տարրն նոր թռիչ մ'առաւ, բայց առաջինք արդէն ներողամիտք գտնուեր էին իրենց յունասիրութեամբ եւ գաղջ զրադաշտականութեամբ. եւ այս բռնած ուղղութեան

Անահիտն է նախատիպ ամենայն Անահտաց. մինչ Պարսից Նահիտն սոսկ Ազատաց (իզէտ) դասէն էր եւ ոչ աստուած»։

ազդեցութեամբ կը մեկնուի՝ սոյն իշխանաց ժամանակ բերուած հայ կրօնից օտար եւ այլազգեն բնադրոշմն։ Այս կերպով կ՚ըմբռնենք, թէ ի՛նչպէս Սասանեանք՝ իրենց աշխարհակալութեամբ տիրելով Հայաստանի՝ ի նմին ժամանակի հայ ազգին բուռն թշնամիք հանդիսացան կրօնական հակառակութեան պատճառաւ։ Կը խորտակեն նոքա կուռքերը եւ դիւցազանց արձանները, եւ բռնի Բագաւան լերան գլուխը կը կանգնեն կրակատուն մի։ Ինչպէս յայտնի է, հեթանոս Հայոց եւ ճշմարիտ մոգերուն մէջ եղած հակառակութիւնն մեծ եւ սաստիկ էր։

## Բ

## ԱՍՈՐԱԿԱՆ ԾԱԳՄԱՄԲ ԱՍՏՈՒԱԾՔ

Ցեա զօրաւոր ազդեցութեան, զոր հայ դիցաբանութեան վերայ ըրեր է Իրանի մտաւոր զարգացումն, հարկ է ի նկատի առնուլ նա եւ գլխաւորապէս ասորական ազդեցութիւնը։ Պարսկական շրջանին մէջ, ո՛չ միայն յաշխարհին Ասորւոց եւ ի վերին Միջագետս գործածական էր արամէական լեզուն, այլ նա

*եւ Իրակայ* մէջ մուտ գործելով՝ խափաներ էր տեղւոյն հին բնիկ ասորաքաղդեական լեզուն։ Փոքր Ասիոյ մէջ, ինչպէս կ՚ապացուցանեն դրամներէն, պարսիկ նախարարք պաշտօնական լեզուի կարգը դասեր էին զայն։ Սակայն տե-*

* Ոմանք համարեցան թէ Իրակ ուրիշ բան չէ՝ բայց Իրան անունն, այդ ձեւը առած Արաբացւոց բերանը. (Հմմտ. *Nouv. Journ. Asiat.* 3e série, XI. 1841, p. 658). սակայն սխալ է այդ կարծիքը: Աշխարհագիրք ընդհանրապէս կը միաբանին յայսմ, թէ Իրակ անունն կը տրուէր յԱրաբացւոց այն կողմերուն կամ նահանգներուն, որոնք կը գտնուէին Պարսկական ծոցոյն հիւսիսային եւ հիւսիս–արեւմտեան կողմերը։ Այդ նահանգներէն մին, որ կը գտնուի Եփրատ եւ Տիգրիս գետոց ստորին ընթացքին մէջտեղ, եւ կը կոչուի ներկայապէս արաբական Իրակ (Irâk al-Arabi), կը համապատասխանէ հին աշխարհին Բաբելացւոց եւ Քաղդէացւոց։ Իսկ երկրորդն, որ պարսիկ պետութեան կեդրոնը կը գրաւէր, եւ ուր կը գտնուին Համադան եւ Սպահան քաղաքներն, պարսկական Իրակ (Irâk Adjemi) կը կոչուի։ Այս երկուքէն առաջինն է, որուն յատկապէս Իրակ անունը կը տրուի: Մասուդի (ծն. ի Պաղտատ, ի վերջս Թ դարու, եւ մեռած յԵգիպտոս յամին 956) արաբացի պատմիչն շատ կը գովէ այս երկիրը, ըսելով թէ «արեւելքի ջահն է, եւ երկրին սիրտն ու կեդրոնն: գետերով ոռոգուած, արգաւանդ եւ բերրի երկիր մ՚է, եւ բարեխառն կլիմայ մ՚ունի։ Բնակիչք բարեկազմք են, հանճարեղք, խորաթափանց մտքով եւ հաստատուն բնաւորութեամբ մարդիկ, բայց հակամէտք ի նենգութիւն... Իրակ՝ արեւելքի բանալին է եւ լուսոյ ճանապարհն». Հմմտ. Vivien de St. Martin. *Diction. de Géographie universelle.* II, էջ 860–861։

զացի հայկական աւանդութիւնն այս մասին ազդեցութիւններ կ'ընծայէ յունական շրջանին, եւ պիտի տեսնենք՝ թէ բազում ինչ այս աւանդութեան ի նպաստ կը խօսի։ Նախ եւ առաջ մեծին Տիգրանի անմիջական նախորդք ամէն կողմէ ընդարձակեցին սահմանները Հայաստանի, որ յառաջն փոքր եւ աննշան էր. իսկ այն գաւառները, յորս կը բնակէին Կատաւոնացիք (Եկեղեաց) եւ Ասորիք (Տարօն), ո՛չ միայն միացուցին իրենց պետութեան հետ, այլ եւ հայացուցին զանոնք։ Եւ այսպէս, գիտցան Հայք միացնել եւ իւրացնել բնակչաց այն օտար տարերքը, եւ նոյնացնել զանոնք իրենց հետ[1]։ Բայց բնական է թէ այդ միաւորութիւնն չէր կարող ի գլուխ ելնել, եթէ Հայք՝ քան զիրենք աւելի բարձր զարգացում ունեցող ժողովրդէ մի՝ յաճախ փոխառութիւններ չընէին։

Նախ եւ առաջ պէտք է յիշել Բարշամին չաստուածը։ Սորա մասին Ագաթանգեղոս հետեւեալը կը պատմէ (ՃԹ·, յէջ 585). « Երթայր հասանէր (այս է, ս. Գրիգոր) ի

1· Συνηύξησαν ἐκ τῶν περικειμένων ἐθνῶν ἀποτεμόμενοι μέρη . . . Καταόνων δὲ Ἀκιλισηνὴν καὶ τὴν περὶ τὸν Ἀντίταυρον, Σύρων δὲ Ταραυνῖτιν, ὥστε πάντας ὁμογλάττους εἶναι· Strabo. XI. 528 C.

Դարանաղեաց գաւառն, զի եւ անդ զանուանելոցն զուտ աստուածոցն զբագինսն կործանեսցեն, որ էր ի գեօղն Թորդան՝ մեհեան անուանեալ սպիտակափառ դիցն Բարշամինայ։ Նախ զնա կործանէին եւ զպատկերն նորին փշրէին »։ Կ'արժէ համեմատել զայս յոյն թարգմանութեան հետ, որ նշանաւոր է յիշեալ դից 'անուան ձեւին տարբերութեան պատճառաւ (§ 131). παραγενόμενος δὲ ἔφθασε τὴν τῶν Δαραναλιτῶν* πατρίδα, ἵνα κἀκεῖ τῶν ψευδωνύμων θεῶν τὰ ἱερὰ καταστρέψωσιν. ἐλθόντες δὲ ἐν τῇ καλουμένῃ κώμῃ Θορδάν, ἐν ᾗ ὑπῆρχεν ἱερὸν λεγόμενον λευκοδόξων δαιμόνων, βωμὸς Βαρσαμήνης, πρῶτον τοῦτον καταστρέψαντες, τὴν εἰκόνα αὐτῆς συνέτριψαν. Յոյնն վրիպակաւ այդ չաստուածը իբր դիցուհի կը նկատէ։ Յունարէնին մէջ գործածուած անուան ձեւն կը հաստատուի նա եւ Մովսիսի Խորենացւոյ վկայութեամբ, զոր կը յիշէ սոյն դից պաշտաման հաստատութիւնը պատմած միջոց (Բ, ԺԴ). Տիգրան «իջանէ ի Միջագետս, եւ գտեալ անդ զԲարշամինայ զպատկերն, զոր ի փղոսկրոյ եւ ի բիւրեղէ կազմեալ էր ար-

* Այս գաւառս Պտղոմեայ Աշխարհագրութեան մէջ (Ե. 13, 14) Δαράνισσα կը կոչուի։

ծաթով, հրամայէ տանել կանգնել յաւանին Թորդան »: Մովսիսի տուած տեղեկութիւնն կ'արդարացընէ լիովին չաստուծոյն ընծայուած « ամպրոպակափառ » մակդիրը: Արծաթեայ եւ փղոսկրեայ արձանին — որուն աչքերն բիւրեղէ շինուած էին — հարկաւ իրեն շուրջը պայծառ լոյս մի պիտի փայլատակէր: Անանիա Շիրակացին, « Ցաղագս կաթին ծրոյ » գլխուն մէջ, կարեւոր զրոյց մի կ'աւանդէ մեզ Բարշամինայի մասին: Նախ եւ առաջ այլ եւ այլ տեղեկութիւններ կամ մեկնութիւններ կու տայ՝ թէ ինչ է « ծիր կաթին », զորս փոխ առեր է յունական դիցաբանութենէն, եւ յետոյ կը պատմէ հետեւեալը հին հայերենով[1]. « Դարձեալ ոմանք յառաջնոցն Հայոց ասացին՝ թէ խիստ ձմերանի վահագն, նախնի[2] Հայոց, գողացաւ գյարդն Բարշամայ[3] Ասորեստա-

1. Անանիայի Շիրակունւոյ մնացորդք բանից. ի լոյս ած Ք. Պ. — Ս.Պետերբուրգ, 1877. յէջ 48:

2. Ս. Ղազարու ձեռագրին ընդօրինակութիւն մի կը պարտիմ ազնուութեան բարեկամիս՝ Հ. Բ. Սարգիսեանի: — Գրչագիր մի ունի նախնին, ուրիշ մի՝ նախնի:

3. Գրչագիր մի ունի Բաղամայ. Պատկանեան՝ Բաղաամայ: Երկրորդական ձեւն Բաղամ արդեօք դիտմամբ եղած խանգարում մ'է Բա-

նեայց[1] նախնոյն, զոր եւ մեք սովորեցաք բնախօսութեամբ Յարդագողի[2] հետ անուանել »։

Դիտելի է թէ այս տեղ Բարշամ (Բաղամ) յայտնապէս նշանակուած է իբր ասորեստանցի եւ թշնամի հայկազն վահագնի։ Բարշամ անուան ձեւն կը գտնուի, ինչպէս Անանիայ շիրակունւոյ գրութեան մէջ, նոյնպէս մի ուրիշ պատմութեան մէջ՝ զոր Մովսէս փոխ առած կ'ըսէ Մար Աբասէն. բայց տարակոյս չկայ՝ թէ չի գտնուիր այն նորա համառօտ քաղուածոյին մէջ։ Կը պատմէ նա (Ա, ԺԴ), թէ Արամ՝ յետ վճարելու արեւելեայց հետ ունեցած պատերազմը եւ յաղթելու անոնց՝ Ասորեստանի դէմ դարձուց իւր զէնքերը։ Յաղթական ճակատամարտի մի մէջ սպանեց « զապականիչ ազգին իւրոյ, Բարշամ անուն՝ յազգէ սկայիցն »։ « Եւ զայս Բարշամ, վասն արութեան իւրոյ բազում գործոց, աստուածացուցեալ պաշտեցին Ասորիք ժամանակս յոլովս »։ Այսպէս նա եւ սոյն տեղեկութեան մէջ կ'երեւի Բարշամ իբրու ներկայացուցիչն Ասորւոց՝ հակառակ

ղաաւմայ (Βαλαάμ), հեթանոսական գարշութիւնը ծածկելու համար։

1. Պատկանեան ունի Ասորւոց։
2. Պատկանեան՝ յարդգողի։

Արամայ (որ ի հարկէ բնիկ հայ չէ), եւ որ ընդ հակառակն կը ներկայացնէ ազգային տարրը։

Բարշիմնիա (Բարշամին) անուան մեկնութեան համար Լագարդ հետեւեալ դիտողութիւնը կ'ընէ (Ագաթ. էջ 138). « Յիրաւի ինձ այնպէս կ'երեւի թէ Բարշիմնիա՝ սխալ ընթերցում մ'է ܒܪܫܡܝܐ ասորի անուան մի (զոր սակայն ես չեմ ըմբռներ, կ'ըսէ նոյն ինքն Լագարդ). եւ որովհետեւ Βαρσαμήνης կը տարբերի, այլ եւս աւելի չեմ վիճաբանիր այդ անուան մասին. աստ Հոֆման կրնայ մեզ ընդարձակ մեկնութիւններ տալ »։ Եւ սակայն Հոֆման[1] միշտ համեմատեր է զայն Բեէլշմինի հետ, որու պաշտօնն յԱսորւոց առ Հայս անցած կը համարի։ Երկնից չաստուածն կամ տէրն շատ կերպով կրնայ ապացուցուիլ ի փիւնիկեան արձանագիրս[2] եւ այն Բաալշամէն ձեւով, ինչպէս որ առ Սանքունիաթոնի Բեել—սամիմ* կամ Բեելսա-

1. Akten, եւ այլն, էջ 156։
2. Յաջորդին համար հմմտ. E. Meyer, Art. Baal առ Roscher myth. Lex. Sp. 2872.

* Այդ անունն կը գտնուի նա եւ առ մեզ գործածուած Բարշամինայի համար. ինչպէս, օրինակ իմն, Յակոբ Սրճեցին Պէլ—սամինս կը կոչէ զայն.

մեն կոչուած է այն[1]. «Բեելսամէն է (կոչուի) առ փիւնիկեցիս տէրն երկնից». այսպէս նա եւ փիլոն միշտ արամէական ձեւը գործածեր է Բաալշամին։ Ստուգիւ առ Ասորիս՝ երկնից չաստուածն Բեելշամին շատ յարգուած էր*։ Սակայն դժուարութիւն կը յարուցանէ հայերէն անուան ձեւին գրութեան մէջ լ տառի փոխուիլն ի ր, զոր եւ ուրիշ կերպով կարելի չէ բացատրել՝ բայց

(Հմմտ. Հին Հաւատք Հայոց Հ. Ղ. Վ. Ալիշանի. յէջ 312)։

1. Եւսեբ. Պատրաստ. աւետ. Ա. ժ, 7։

* Մ. Էմին, իւր նախայիշեալ «Recherches sur le paganisme arménien» գրքուկին մէջ, թէ եւ կը միաբանի յարգելի հեղինակիս կարծեաց՝ սոյն դից ասորական ծագման մասին, այլ կը տարբերի անուան ստուգաբանութեան մէջ։ Նա կը նոյնացընէ զԲարշամին՝ Ասորեստանեայց Նին կամ Նինին պատերազմի չաստուծոյն հետ, որ մերթ կը կոչուի եւս Բար։ Կ'ըսէ նա. «Նին կը թարգմանուի տէր, իսկ Ին կը նշանակէ անուն. նոյնպէս այլ Բար, կը յաւելու, կը նշանակէ տէր, եւ Շամ, շիմ կը համապատասխանէ Ինի՝ որ կը թարգմանուի անուն», եւ աստի կը հետեւցունէ թէ՝ Բարշամին (Բարշիմնիա) է Նին կամ Բար դիքն, զոր կը պաշտէին Ասորեստանցիք իբրու իրենց թագաւորաց պաշտպան հերակլէսն: Սոյն կարծեաց հակառակ կը զինուին շատ բանասէրք, որք Բարշամինի ծագումը կը դնեն ի Բաալշամինէ, որ կը նշանակէ ստուգիւ «տէր կամ աստուած երկնից»: — Բելշամինի մասին հմմտ. նա եւ Pluche (1688-1761), *Histoire du ciel*, t. I, chap. II.

միայն իրանեան լեզուին ազդեցութեամբ՝ որուն միջոցաւ անցեր է հայերէնի մէջ։ Պէտք է յիշել թէ, օրինակ իմն, Babiru եղեր է Babilu, Naditabira եղեր է Nidintavbil, եւ այլն։ Սակայն այս բանս կարելի չէ մտածել՝ բայց միայն այնպիսի ժամանակի կամ շրջանի մէջ, յորում իրանեան ազդեցութիւնն ընկերական բարձրագոյն դասակարգին վերայ (որ միայն նշանակութիւն ունէր Հայաստանի մէջ) զօրացեր եւ օրինաւոր եղած էր։ Դարձեալ, որչափ գիտենք, թուի թէ այս բանս արդէն վաղուց իսկ կատարուեր էր Տիգրանի ժամանակէն սկսեալ. եւ այսոր հետ շատ լաւ կը յարմարի այն՝ որ կ'աւանդուի թէ ստուգիւ Տիգրան Թագաւորն մուծեր է Հայաստանի մէջ սոյն պաշտօնս։ Դարձեալ, ինչպէս կ'երեւի ինձ, Բաալշամինի եւ Բարշամինի նոյնութիւնն բնաւ ո՛ եւ է կասկած կամ դժուարութիւն չի հաներ այս բանիս հակառակ։ Հետեւաբար Բարշամին արամէական չաստուածն է երկնի եւ աշխարհի։ Եթէ մինչեւ ցարդ յառաջ բերուած հետեւութիւնք ուղիղ են, միանգամայն լոյս կը սփռէ այս բանս պարզաբար այն արտաքին եղանակին վերայ, որով կազմուեր է հայկական պանթէոնն։ Արքունի հրամանաւ կը յափշտակուի

դից արձան մի եւ կը տարուի իւր ասորի հայրենիքէն, եւ իսկոյն Հայաստանի մէջ կը կազմէ պաշտաման մի կեդրոնը։ Այս ուրեմն այդ կրօնական պաշտօնն պարզաբար բարձրագոյն իշխանութեան կողմէ հաստատուած է. յարեւելս ընդհանրապէս միշտ այսպէս եղած է։ Եղամացի Թագաւորին ձեռքով Արկուէն տարուած արձանն Շօշ քաղաքին մէջ Նանայի պաշտաման կեդրոնը կը կազմէ. եւ այդ պաշտօնն արտաքին նիւթական արձանին հետ կը կապուի։ Ինչպէս որ Անահիտ դիցուհին՝ իւր ոսկի արձանին համար՝ հռչակուած եւ փառաւորուած է երգերուն մէջ, այսպէս նա եւ երկնից չաստուածն իւր արձանին պատճառաւ կոչուեր է սպիտակափառ։ Սակայն մասնաւոր դիտողութեան արժանի է այն հանգամանքն, որ այս դեռ նոր բերուած չաստուածն սերտ յարաբերութեան մէջ կը մնէ՝ երկար ժամանակէ ի վեր աշխարհին մէջ հաստատուած Վահագն դից հետ, եւ այս յարաբերութիւնս կը գտնէ իրեն դիցաբանական բացատրութիւնը։ Ըստ այսմ յայտ է՝ թէ Տիգրան Թագաւորին ժամանակներէ տակաւին կենդանի էր յատկապէս առասպելներ կամ դիցաբանական զրոյցներ ստեղծող զօրութիւնն ժողովրդեան։ Այս

բանս կը հաստատուի նա եւ ուրիշ դիտողութեամբք: Տիգրանայ[1], եւ իւր անմիջական նախորդաց եւ յաջորդաց ժամանակներն հըռչակուած են մասնաւորապէս դիւցազնական երգոց մէջ: Այս երգերուս մէջ այնպիսի ակնարկութիւնք կան, զորս ուղիղ մտքով առեր են ժամանակակիցք, իսկ յետինք սխալ հասկըցեր են զայնս, ինչպէս՝ օրինակ իմն՝ Դոմետիոս Կորբուղոնի պատերազմի յիշատակութիւնն. վասն զի այն երգերու կամ զրոյցներու յօրինումն ժամանակագրօրէն պէտք չէ շատ հեռու դնել այն դէպքերէն՝ որք կ՚երգուին նոցա մէջ: Եւ այսպէս, այն ենթադրութիւնն, թէ Տիգրանայ ժամանակամիջոցին քերթողական ստեղծող զօրութիւնն նըպաստաւոր եղեր է դիւցաբանական երգոց, անհաւանական չերեւիր:

Նոյնպէս աստրական ծագումն ունեցեր է Աստղիկ*: Իւր գլխաւոր մեհեանն Աշտի-

1. Միայն թէ Մովսէս Խորենացին, իւր գործած տարաժամ տեղեկութեանց մէջ, դիւցազներգութեանց Տիգրանը կը շփոթէ Կիւրամարգի Տիգրանայ հետ, մինչդեռ բնականաբար ժողովրդեան հռչակածն էր արքայից արքայ կոչուած Տիգրանն:

* «Ազգային աւանդութիւնն համարի զԱստղիկ՝ սեփական հայ անուամբ եւ աննման օտարաց՝

շատու մէջ էր, ինչպէս կը հաստատէ զայս Ագաթանգեղոսի վաղ իսկ յիշեալ վկայութիւնն. «Եւ երրորդ մեհեանն անուանեալ Աստղկան դից, սենեակ Վահագնի կարդացեալ ըստ յունականին, որ է ինքն Ափրոդիտէս[1]»: Մովսէս Խորենացին կը պատմէ թէ ինչ կերպով հաստատուեցաւ դիցուհւոյս պաշտօնն Տիգրան Թագաւորին ժամանակ (Բ,

դուստր Նոյի, ջրհեղեղէն վերջը ծնուած, եւ այլն». (Հին հաւատք Հայոց, էջ 279)· Մ. Խորենացին, իւր Ա գրոց Զ գլխուն մէջ Բերոսոսեան Սիբիլլայի աւանդութիւնը մէջ կը բերէ, յորում Աստղիկն քոյր կ'ըսուի Տիտանայ եւ Յապետոսի, որով եւ դուստր կը լինի Քսիսութրեայ, որ է՝ Նոյի: Դարձեալ սորա անուամբ յորջնուած այլեւայլ տեղեր կը գտնուին մեր աշխարհին մէջ, ինչպէս Աստղնաբերդն կամ Աստղկան բերդ՝ Տարօնոյ կողմերը, զոր իբր թէ Աստղիկ շինել տուած է, ինչպէս կ'աւանդուի, իւր Զրուան եղբօր ապահովութեան համար· դարձեալ ուրիշ Աստղբերդ մի Հաշտենից գաւառին մօտ. այսպէս նա եւ Աստղիկ բլուր, Աստղիկ գետ, եւ այլն, յորմէ յայտ է թէ որքան յարգուած էր առ Հայս սոյն դիցուհիս:

1. Ագաթ. էջ 603. — Ափրոդիտէս անուան ընկատմամբ հետեւեալ դիտողութիւնը կ'ընէ Լագարդ (Ագաթանգեղոս էջ 138). «Այսպէս հայ բնագիրն պահեր է յունական հոլովմանց վերջաւորութիւնը, որ յիրաւի նորա բնագիր լինելուն նպաստաւոր չէ»: Մար Միքայէլի (ասորւոյ) Հայ թարգմանութիւնն այլ նմանապէս (էջ 134) նոյն Ափրոդիտես ձեւը գործածեր է, երբ Քրիստոսի գերեզմանին վերայ յիշեալ դի-

ԺԴ)․ « Բայց զԱփրոդիտեայ զպատկերն իբրեւ Երակղեայ տարփաւորի՝ առ նորին պատկերին Երակղեայ հրամայեաց կանգնել յաշտից անդխոն* » ։ Թովմա արծրունի (յէջ 54, տպագր․ Պետրբուրգի, 1887) կը պատմէ, թէ Արտաշէս Թագաւորին տիկինն Սաթինիկ « ոչ ի բաց մերժեցաւ ի կռոցն Աստղկայ անուանեալ պատկերին »։ Միւս յաճախ յիշատակութիւնք Աստղկայ, որք կը գտնուին ժամանակագրաց մօտ, ուրիշ բան չեն՝ բայց միայն թարգմանութիւնք յոյն 'Αφροδίτη կամ 'Αστερία անուանց։ Գուցէ Հոֆմանի ըրած ենթադրութիւնն այս անուանս մասին շատ ճիշդ է[1], այսինքն՝ թէ Աստղիկ թարգմանութիւն է ասորի Kaukabta բառին, որ կը նշանակէ միանգամայն « աստ-

ցուհւոյն արձանի կանգնելուն պատմութիւնը կ'ընէ․ « պատկեր Աստղկայ, որ է Ափրոդիտէս »։ Այլ գուցէ թարգմանիչն այդպէս գրեր է, յիշելով պարզաբար Ագաթանգեղոսի նման բացատրութիւնը։

* Մ․ Խորենացի ի Պատմութեան սրբոց Հռիփսիմեանց կը յիշէ ուրիշ մեհեան մ'այլ Աստղկայ « ի գլուխ լերինն Պաղատոյ », ուր « տուն Արամազդայ եւ Աստղկայ մեծարէին » կ'ըսէ․ (Մ․ Խոր․ մատենագր․ 1865, էջ 301)։

1․ Akten, եւ այլն, էջ 136։

դիկ » կամ « փոքրիկ աստղ », արուսեակ կամ լուսաբեր մոլորակը « փոքրիկ բախտը », զանազանելու համար լուսնթագէն, որ « մեծ բախտ » կը կոչուի։ Ապա ուրեմն Աստղիկն ուրիշ բան չէ՝ բայց հայացուած Բելտի աստղի դիցուհւոյն*։ Սոյն ենթադրութիւնս հաստատուն կռուան մ'ունի այնու՝ որ իրեն նուիրուած մեհեանն կը գըտնուէր Տարօն գաւառին մէջ, որու բնակիչք նախնաբար ասորիք էին, եւ յետոյ ժամանակաւ հայացեր են։ Վահագն, իբրու ներկայացուցիչ հայ աշխարհականներու, սերտ յարաբերութեան մէջ կը մտնէ երկրին բընիկ դիցուհւոյն հետ։

Մի եւ նոյն ազդեցութեամբ մուտ գտեր է հայկական աստուածոց խմբին մէջ Նա եւ Նանա կամ Նանէա դիցուհին։ Քաղդէացի նախկին ժողովրդեան պաշտած դիցուհւոյս մասին, զոր յետոյ հաւասար եռանդեամբ պատուեցին Նա եւ Եղամացիք եւ Սեմականք, Հոֆման որոշիչ կերպով ճառեր է առանձին

* Մ. Էմին (Recherches sur le pagan. armén. յէջ 15) հայերէն աստեղ հետ նոյն կը համարի սանսկրիտ tara եւ զանդիկ astar եւ staré բառերը. իսկ զդիցուհին Աստղիկ նոյն կը համարի պարսիկ Tistria եւ Tashter, եւ Ասորիստանեայց Ishtar դիցուհեաց հետ։

գրութեան մը մէջ[1]: Իսկ իրեն յատուկ հայկական պաշտաման մասին գալով, գլխաւոր մեհեանն կը գտնուէր Երկրին արեւմտեան կողմը, որ յառաջն սեմական էր, ուր կը բնակէին կատաւոնացիք: Դիցուհւոյս անունն յիշուած է միայն Ագաթանգեղոսի լակոնական ոճով գրուած տեղեկութեան մը մէջ (յէջ 587). « Եւ անտի ընդ դետն Գայլ յայնկոյս անցանէին, քանդէին զՆանէական մեհեանն դստերն Արամազդայ ի Թիլն յաւանի. եւ զգանձս երկոցուն մեհենացն[2] աւարեալ ժողովեալ ի նուէրս սուրբ սպասու եկեղեցեաց Աստուծոյ թողին անդէօքն հանգերձ »: Ցոյնն կ'ըսէ Ἀθηνᾶς βωμόν, Մովսէս Խորենացի եւս մի եւ նոյն յունական յորջորջումը կու տայ դիցուհւոյս*: Սակայն

1. Akten, եւ այլն, յէջս 130–161:

1. Այսինքն է՝ Անահտայ մեհենին, որ յԵրէզ կը գտնուէր, եւ Նանէայի՝ որ ի Թիլն աւանի:

* Դիտելի է թէ Մակաբայեցւոց գրոց (Բ, գլ. Ա, 13–14) մէջ երկիցս կը յիշուի Նանեայ անունն ճշդիւ յունին համեմատ որ կ'ըսէ, ἐν τῷ τῆς Ναναίας ἱερῷ եւ τῶν περὶ τὴν Ναναίαν ἱερέων. Իսկ Յովսեպոս իւր Հնութիւնք հրէականք (ԺԲ, 13) գրքին մէջ կը կոչէ այդ դիցուհին Ἄρτεμις անուամբ, որ սխալ է ըստ ինքեան, զի սա կը համապատասխանէ մերս Անահտայ, մինչ ճշդագոյն պիտի լինէր թարգմանել զայն յունարէն Ἀθηνᾶ.

նա Հայաստանի մէջ, հակառակ Անահտայ՝ մայր դիցուհւոյն, թուի ունենալ պատերազմի դիցուհւոյ կուսական խիստ բնաւորութիւնը։ Դարձեալ գիտելի բան մ'է, որ հայ աստուածուհիք ընդհանրապէս միշտ յարնչութիւններ ունին դից կամ աստուածոց հետ. ինչպէս, օրինակ իմն, Անահիտ եւ Նանէա՝ Արամազդայ դստերք են, իսկ Աստղիկ՝ իբրեւ տարփաւոր Վահագնի կը ներկայանայ։

Ագաթանգեղեայ հայ բնագրին մէջ, ինչպէս սովորական է այս, չունինք մենք դիցուհւոյն ընիկ անունը, այլ միայն պժլախտաբար անունէն կազմուած ածականը, «Նանէական մեհեան»։ Արդ, համեմատելով զայն, օրինակ իմն, «Ասիա, ասիական» անուանց հետ, կրնանք հետեւցունել թէ «Նանէական» կազմուած է «Նանէա»յէն։ Եթէ ուղիղ է այս, այն ժամանակ Նանէա ոչ եթէ արեւելեան՝ այլ յունական անուան ձեւով կը ներկայանայ մեզ։ Ապա ուրեմն Հայք ոչ թէ ուղղակի յարեւելեայց առեր են այդ դիցուհին, այլ յունական միջնորդութեամբ, որ է՝ յունացած Ասորիներէ։ Գէթ չի հակառակիր բնաւ այս բանիս՝ աստուածուհւոյն պաշտաման հաստատուելուն նկատմամբ Մովսէսի տուած տեղեկութիւնն։

Հայոց կրօնական զարգացման վերայ եղած արամէական ազդեցութիւնն, բաց ի յԱսորւոց փոխառեալ աստուածներէն, կը ցուցունա եւ ուրիշ մի քանի աւելի ընդարձակ հանգամանքներով: Հայ քրիստոնեայ աղբերաց մէջ՝ կրօնական պաշտօնէից համար գործածուած բառերն են քուրմ (սովորական անուն պաշտօնէից հեթանոս դից) եւ քահանայ*: Լագարդ[1] այս երկու անուանցս ծագումն այլ ասորերէնէ կը դնէ: Այս բանս կը ցուցընէ թէ Ասորիք ինչպիսի՜ մեծ ազդեցութիւն ունեցեր են հայ հեթանոս կրօնից վերայ:

Դարձեալ, Հայոց առասպելախառն աւանդութեան մէջ պահուեր է նշանաւոր եւ յայտնի յիշատակութիւն մի այն զօրաւոր ազդեցութեան, որ նախնաբար ոխերիմ թշնամի էր ասորական կրօնից եւ զարգացման: Ինչպէս որ Կաւնիացիք ամէն տարի, վահանով եւ տէգերով զինուածք հանդիսաւոր թափորներու մէջ, իրենց երկրին սահմաններէն դուրս կը վարէին օտար չաստուածները. այսպէս նա եւ հին հայկական աւանդութիւնն

* Վերջինս առ մեզ ընդհանրապէս ճշմարիտ Աստուծոյ պաշտօնէից համար գործածուած է:

1. Arm. Stud. էջ 160 եւ 157:

պահեր է յիշատակը կաւոյն նախնական ժողովրդեան գիտակցութեան, — զոր կը ներկայացընէր Հայկ դիւցազն անուանակալ (ἥρως ἐπώνυμος), — ընդդէմ ասորական գիտակցութեան, որուն ներկայացուցիչն էր Տիտանեան Բէլ՝ անձնաւորուած իբրու նախկին թագաւոր։ Հայկայ եւ Բելայ պատերազմին վէպն երկու պատմութեանց մէջ եւս պահուած է, նախ Մ. Խորենացւոյ գրքին մէջ, եւ յետոյ առ Ստոյն—Ագաթանգեղեայ, որ կ՚ըսէ թէ՝ գտեր է զայն «ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ[1] »: Ըստ գիտողութեանց Գուտշմիդի[2] եւ մանաւանդ Գ. Ֆետտերի[3] կրնանք առպահովապէս հաստատել,

1. Սեբէոս, հրատ. Ք. Պատկանեանի, էջ 1. Փոխանակ Մծուրնացւոյ՝ Բաումգարտներ հանճարեղ ենթադրութեամբ մի կը դնէ Մծուրինացւոյ (Մծբնացւոյ), որուն կը հաւանին նա եւ Ֆետտեր եւ Կարրիէր։ ZDMG, 1886 էջ 495։ Սակայն հարկաւոր չէ այդ ուղղագրութիւնն։ Մար Աբաս ընիկ ծննդեամբ էր Մծուրքէն (= κλίμα Μουζουρῶν). Գելցեր Կիպր. էջ 183։ Մար Աբասայ ժամանակը Հայք եւս կը գրէին միայն ասորի կամ յոյն լեզուներով, եւ եթէ Մովսէս իրաւամբ կը կոչէ զինքը ասորի ոմն, այն է պատճառը՝ որ յիրաւի այն ժամանակ բազմաթիւ ասորիք կը գտնուէին Հայաստանի հարաւային կողմերը։

2. Kl. Schr. III S. 320 ff.

3. Festgruss an R. Roth 1893 S. 81 ff.

թէ դա ուրիշ բան չէր՝ բայց միայն քաղուածոյ համառօտութիւն Մար Աբաս Կատինայի, որ իբրեւ աղբիւր ծառայեր է Մ. Խորենացւոյ: Այդ քաղուածին մէջ կը բովանդակուին միայն գլխաւոր եւ կարեւոր կէտերն. մինչ Մովսէս շատ յաւելուածներ ըրեր, ճոխացուցեր եւ ըստ կամս այլեւայլ փոփոխութիւններ ըրեր է: Այս պատճառաւ Հայկայ եւ Բելայ մէջ եղած պատերազմին հատուածը մէջ կը բերեմ աստ՝ Անանունին քաղուածին համեմատ[1].

« Յայնմ ժամանակի Թագաւորեաց ի Բաբելոն որսորդ հսկայ Բէլն Տիտանեան ճոխն չաստուածացեալ, որոյ հզօր զօրութեամբ և սաստիկ յոյժ գեղ պարանոցի իւրոյ: Եւ էր իշխան ամենայն ազգաց՝ որ սփռեցան ի վերայ երեսաց ամենայն երկրի, որոյ արարեալ առ աչօք կախարդութեամբ հնարս և հրամանս Թագաւորականս ամենայն ազգաց. և հպարտութեամբ ամբարտաւանութեան իւրոյ կանգնեաց զպատկերն իւր, և ետ երկիր պագանել իբրեւ Աստուծոյ, և զոհս մատուցանել:

« Եւ վաղվաղակի կատարէին ամենայն ազգքն

1. Սեբէոս, եւ այլն, էջ 3:

զհրամանս նորա. բայց մի ոմն Հայկ անուն նահապետ ազգացն ո՛չ հնազանդեցաւ ի ծառայութիւն նորա, եւ ո՛չ կանգնէր ի տան իւրում զպատկեր նորա, և ո՛չ մեծարէր ըզնա աստուածօրէն շքով։

«Եւ էր անուն նորա Հայկ, ընդ որում ծնաւ արքայի Բելայ ոխութիւն մեծ։ Եւ զօրաժողով լինի Բէլ արքայ ի Բաբելոն եւ դիմէ գնայ ի վերայ Հայկայ սպանանել զնա։

«Գայ հասանէ յերկիրն Արարադայ ի տունն՝ որ էր նոցա հայրենի՝ զոր շինեալն էր ի լեռնոտին. եւ Կադմոս փախստական գնաց ի Հարք առ հայր իւր ազդ առնել նմա. եւ ասէ. Դիմեալ գայ Բէլ արքայ ի վերայ քո, եւ եկն եհաս մինչեւ ի տուն անդր. եւ ես կնաւ իմով եւ որդւովք ահաւասիկ կամ փախստական։

«Առնու Հայկն զԱրամենակ եւ զԿադմոս զորդի իւր. եւ զորդիս նոցա եւ զորդիս եօթանեցունց զստերաց իւրոց, արս հսկայս եւ նուազունս թուով։ Եւ ի դիմի հարկանի Հայկն Բելայ արքայի. և ոչ կարաց զդէմ ունել բազմութեան արանց հսկայից սպառազինաց։ Անդ ի դիմի հարկանի Հայկն Բելայ, եւ կամեցաւ ըմբռնել զնա Բէլ ի բուռն իւր։ Խոյս ետ Հայկն յերեսաց նորա, եւ գնայր

նա փախստական. եւ Բէլ զհետ նորա երթայր պնդագոյն հանդերձ զինակրաւն իւրով:

«Զտեղի կալաւ Հայկն, եւ ասէ ցնա. Զի՞ պնդեալ գաս զհետ իմ. դարձի՛ր անդրէն ի տեղի քո՝ զի մի՛ մեռանիցիս այսօր ի ձեռաց իմոց. քանզի ոչ վրիպի նետ իմ յիմէք: Պատասխանի ետ Բէլ եւ ասէ. Վասն այնորիկ՝ զի մի անկցիս ի ձեռս մանկանց իմոց եւ մեռանիցիս. այլ ե՛կ ի ձեռս իմ, եւ կեա՛ց ի տան իմում խաղաղութեամբ, ունելով ի գործս զմանկունս ի տան իմոյ զօրականս[1]:

«Պատասխանի ետ նմա Հայկն եւ ասէ. Շո՛ւն ես դու՝ եւ յերամակէ շանց դու եւ ժողովուրդ քո: Վասն այսորիկ թափեցից իսկ այսօր ի քեզ զկապարճս իմ: — Եւ արքայն Տիտանեան սպառազինեալ, եւ վստահացեալ ի կուռ սպառազինութիւն անձին իւրոյ:

«Եւ Հայկն Աբեթայն մերձենայր և ունէր ի ձեռին իւրում զաղեղն, որպէս հեծան հզօր մայրափայտեայ: Եւ Հայկին զտեղի կալեալ պատրաստի ընդդէմ նորա աղեղամբ:

«Եւ կանգնէ զկապարճսն ի գետնոյ ընդ ինքեան յաղեղն[2] սկայօրէն կամարին, եւ

1. Ճարտար զինաշարժ լեռնորդին որսորդութեան վարժիչ պիտի լինէր Բաբելացւոց թագաւորին քով:

2. Պատկանեանի Հրատարակութիւնն եւս

ընդ գիրկս մտեալ զօրութեամբ հարկանէ նետիւ զատախտակս երկաթիս, եւ ընդ պղնձի վահանն ի թափ անցուցանէ ընդ մեջէն արձանն յերկիր խարսխեալ վտարեալ նետն. եւ վաղվաղակի յերկիր կործանեալ զատուածակարծեալ հսկայն. եւ զօրք նորա փախստական լինէին: Եւ նոքա զհետ մտեալ թափեցին ի նոցանէ երամակս ձիոց եւ Ջորեաց և ուղտուց:

«Եւ Հայկն դարձաւ ի տեղի իւր՝ եւ չոքաւ կալաւ Հայկն զերկիրն Արարադայ, եւ բնակեցաւ անդրէն ազգաւ իւրով մինչեւ ցայժմ: Եւ ի ժամանակի մահուան իւրոյ ետ զնա կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում որդւոյ Արամենակայ եղբօր Հարմայի»:

Այս հատակոտորս բուն հարազատ հեթանոս գրութիւն մի չէ. զի սկզբնաւորութիւնն իսկ յայտնապէս կը ցուցընէ քրիստոնեայ գրչի մի փոփոխութեան հետքը, եւ բաբելացի թագաւորին աստուածապէս պաշ-

ունի յաղեղն: Միջոցներս չեն ներեր լուսաբանելու այս մթին եւ տարակուսական խօսքը: Մովսէսի համապատասխանող տեղեկութեան մէջ եւս (Ա, ԺԱ), Հայկայ ճարտար հարուածն գլխաւոր կէտն է պատերազմին բոլոր պատմութեան մէջ:

տալելու հրամանն՝ անտարակոյս նմանութիւն մ'է Դանիէլի գրոց ։ Բայց յետագայ պատմութիւնն, հանդերձ երկու դիւցազանց բոլորովին դիւցազներգական նախատալից խօսքերով, հնութեան եւ սկզբնագիր լինելու դրոշմը կը կրէ ։ Դարձեալ Բէլ չաստուծոյ նուաստացումն, իբր սուտ դիւցազն մի անցեալ ժամանակաց, հարկ չկայ կարծելու թէ քրիստոնեայ գրչի մի արբանեկութեան արդիւնք է այն ։ Բանապաշտութեան (rationalismus) հետեւանք էր այն, որ ընդելացեր եւ սովորական դարձեր էր յետ Սուետոնիոսի եւ Փիլոնի բիւբլացւոյ ։ Բելայ վերադիրն « ճոխն չաստուածացեալ » քրիստոնէական սրբագրութիւն մ'է փոխանակ « աստուածացեալ » բացատրութեան ։ Բայց վերջապէս այդ պատմութեան սկզբնական գաղափարն ամենեւին քրիստոնեայ մատենագրի չէ պատկանիր ։

Դարձեալ ուրիշ առասպելայօղ պատմութիւն մի ասորական ազդեցութեան վաւերագիր մ'է, Շամիրամայ գրոյցն ըսել կ'ուզեմ, որ ուրիշ բան չէ՝ բայց միայն Արամայ որդւոյն Արայի վերայ ունեցած նորա սիրոյն վէպն ։ Նմանապէս այս դէպքն այլ մէջ կը բերեմ ըստ Մեբէոսի քաղուածին համեմատ.

« Եւ Շամիրամ կինն Ասորւոց արքային

Նինոսի, քանզի լուաւ վասն գեղեցկութեան նորա և կամեցաւ առնել ընդ նմա բարեկամութիւն, որպէս զի կատարեսցէ զկամս նորա պոռնկութեամբ[1]. քանզի ըստ լրոյ համբաւոյ յոյժ տոփեալ էր ի վերայ անձին եւ գեղոյ նորա գեղեցկութեանն։

«Զի ոչ գտանէր յայնմ ժամանակի նման նորա այր ոք՝ ամենեւին այր պատկերաճոխ. յղէ առ նա հրեշտակս պատարագօք եւ կոչէ զնա առ ինքն ի Նինուէ։ Իսկ Արայն ո՛չ զպատարագն նորա ընկալաւ եւ ո՛չ յանձն առնու երթալ ի Նինուէ առ Շամիրամ. ապա առնու զզօրսն իւր Շամիրամ, եւ գնայ ի վերայ նորա ի Հայս։ Գայ հասանէ ի դաշտն Արայի, եւ տայ պատերազմ ընդ Արայի, հարկանէ զզօրն, եւ սպանանէ զԱրայ ի պատերազմին։

«Եւ հրամայէ Շամիրամ տանել զդի նորա ի վերնատունն ապարանից իւրոց, եւ ասէ. Ես ասացից աստուածոց լիզուլ զվէրս նորա եւ կենդանասցի։

«Իսկ իբրեւ նեխեցաւ դի նորա ի վերնա-

1. Այդ պոռնկութիւն բառին յունարէնն անշուշտ քրիստոնէական արտայայտութիւնն է ուրիշ աւելի հնագոյն՝ բայց նուազ խիստ բացատրութեան մի։

տանն, հրամայեաց զաղտնի ընկենուլ ի վիհ եւ ծածկել ։ Եւ զարդարէ զմի զոմն ի հոմանեաց իւրոց այր պատշաճող. և համբաւ հանէ զԱրայի լիզուլ աստուածոցն եւ յարուցանել ։ Ունի ի ծածուկ. եւ ոչ ումեք ի ծանօթից նորա ցուցանէ զնա. եւ այնպէս հանէ համբաւ արալեզաց տիկինն Շամիրամ։

« Յայնժամ տիրեաց Շամիրամ ի վերայ երկրին Հայաստանեայց, եւ յայնմ հետէ Ասորեստանեայց թագաւորքն տիրեցին մինչեւ զմեռանելն Սենեքարիմայ, ապա ապըստամբեցին յԱսորւոց թագաւորացն ծառայութենէ »։

Ուրիշ ընդարձակ տեղեկութիւնք որ կը գտնուին Մովսէսի գրոց մէջ, բոլորն այլ յունական աղբիւրներէ առնուած են ։ Առ այս կրնանք մէջ բերել այն առակը որ կը սկսի « Ուլունք Շամիրամայ ի ծով[1] » բառերով։ Ուշադիր դիտող մի իսկ եւ իսկ պիտի տեսնէ, թէ այս գրոյցս այլ նոյնպէս չի բովանդակեր պարզաբար ասորահայկական հաւատք ։ Շամիրամայ եւ նորա ամուսնոյն անուանք՝ յետ մղուելով ժամանակաւ՝ կը հասնին մինչեւ առ Կտեսիաս, յորմէ օգտուեր է յայտնապէս,

1. Մ. Խոր. Ա. ժԸ։

օրինակ իմն, Յուլիոս Ափրիկանոս՝ հայրն քրիստոնեայ բանապաշտութեան։ Բայց մի՛ թէ այսու հարկ է կարծել՝ թէ այս գրոյցս քրիստոնեայք հնարեր են կամ գոնէ ձեւակերպեր են։ Ի հարկէ կարեւոր չէ որոշակի ընդունել այդ բանը. զի նոյնպէս Ափրիկանոսի բանապաշտութիւնն մեծաւ մասամբ փիլոքորոսէ, Պոլէփատոսէ կամ Սուետոնիոսէ փոխառեալ ժառանգութիւն մ'է։ Թէպէտ եւ կարելի է թէ Մար Աբաս՝ քրիստոնեայ ջատագովաց ոգւով շատ բաներ ինքնին աւելցուցեր կամ ուղղեր է, այլ նոյնպէս կարելի է թէ հեթանոս աղբերէ մի առեր է, որ տեղայի բնիկ առասպելաց հետ խառներ էր Կտեսեան կամ նման գաղափարներ. վասն զի դիցաբանական բանապաշտ մեկնութիւնն նոյն ժամանակի բոլոր ուսեալ եւ զարգացեալ մարդկանց հասարակաց ստացուած մ'էր, եւ ոչ միայն քրմաց (ἱερεῖς) եւ կամ գուշակաց (μάντεις)։ Այս պատճառաւ չեմ կարծեր՝ թէ այս եւ ուրիշ նման պատմութեանց մէջ գտնուած բանապաշտ բացատրութիւնք անպատճառ պէտք են քրիստոնէից ընծայուիլ. շատ կարելի է թէ կը գտնուէին նոքա հեթանոս աղբեր մի մէջ։

Թէ Շամիրամայ գրոյցն ուրիշ բան չէր՝ բայց բնիկ արամէական դիւցախառն առասպել մի,

զայս կը հաստատէ մեզ Շամիրամայ խաղացած դերն, որ ճշդիւ կը նմանի բաբելոնեան դիւցազներգութեան մէջ գտնուած սիրոյ դիցուհւոյն իստարայ դերին։ Նորա տարփաւորն էր՝ որդին Արամայ, անուանեալ դիւցազին (ἥρως ἐπώνυμος) Արամէացւոց, զոր Հայք՝ տարօրինակ բարեմտութեամբ մի՝ առեր յատկացուցեր են եւ իրենց ազգային դիւցազանց կարգը դասեր են։ Եւսեբիոս իւր Ժամանակագրութեան մէջ կը յիշատակէ զՄիւրոս երկրածին. «Առ սոքօք Միրոս պատմի լեալ երկրածին, յորոյ անուն կ՚ոց եւ Միրիա անուանեցաւ» (Եւսեբ. Պամփիլ. Ժամանականք. Վենետիկ, 1818, էջ 96)։ Արայի կանացի գեղեցկութիւնն կը յիշեցնէ մեզ Ադոնիս, Դուզի, Ատտիս եւ այլ տարփաւորները մեծ դիցամօր (Աստղկան կամ Ափրոդիտեայ). սակայն Արա չի նմանիր տարփաւոր Ադոնիսի՝ որ կը հաւանի եւ անձնատուր կը լինի. այլ սա ընդհակառակն բացէ ի բաց կը մերժէ Շամիրամայ սիրոյ առաջարկութիւնը, որ իրեն պատճառ կը լինի կորըստեան։ Այս տեղ բաւական նմանութիւն մի կը գտնուի Գիլգամեշի դիւցազնական վէպին[1]

1. Համմտ. G. Smith's chaldaeische Genesis (գերմաներէն հրատ. Fr. Delitzschի) 1876, S. 189 ff.

այն հատուածին, յորում դիւցազն կը մերժէ դիւցուհւոյն սիրային առաջարկութիւնները, եւ այն ամենուն ճակատագիրը կ'ունենայ՝ որոնք Իստարի սիրոյն պատճառաւ ի կորուստ մատնեցան։ Սակայն աստ եւս խանգարում մի տեղի ունեցեր է։ Ասորի դիցուհւոյն տարփաւորն, Ասորւոց որդին, իւր նախնական անունը չէ պահած, այլ հայազգւոյ մի ձեռքով յԱրա փոխուեր է։ Վաղուց իսկ արդէն Էմին, ինչպէս նա եւ Լանգլուա[1], նոյն համարեր են զայն Պղատոնի Էրին հետ.. «Էր հայկազին, որ ազգաւ պամփիւլացի էր. եւ երբ մեռաւ պատերազմի մէջ, եւ տասներորդ օրը կը վերցնէին բոլորովին նեխեալ դիակները, նորա դիակն գտնուեցաւ անարատ եւ անապական, զոր եւ տուն տարին թաղելու համար, եւ երկոտասաներորդ օրը՝ մինչ խարուկին վերայ դրուած էր՝ յարութիւն առաւ[2] »։ Անտարակոյս հին առասպելը պատմեր է (Պղա-

1. Collection des hist. a. et m. de l'Arménie. Հմմտ. նա եւ J. Marquart ZDMG XLIX S. 658 ff.

2. . . . Ἠρὸς τοῦ Ἀρμενίου τὸ γένος Παμφύλου. ὅς ποτε ἐν πολέμῳ τελευτήσας, ἀναιρεθέντων δεκαταίων τῶν νεκρῶν ἤδη διεφθαρμένων, ὑγιὴς μὲν ἀνηρέθη, κομισθεὶς δὲ οἴκαδε, μέλλων θάπτεσθαι, δωδεκαταῖος ἐπὶ τῇ πυρᾷ κείμενος ἀνεβίω. Plato Republ. X p. 614 B.

տոն) , թէ Արա իրօք վերստին կենդանացեր էր , եւ պարզաբար յետին ժամանակաց բանապաշտ մեկնութիւն մ'է, որով այն բանին մէջ Թագուհւոյն հնարք մի կը նկատուէր , եւ որ սակայն անյաջող անցեր է ։ Առ Մովսէսի Խորենացւոյ (Ա , ԺԵ) կ'ըսէ Շամիրամ. «Հրամայեցի աստուածոցն իմոց լեզուլ զվէրս նորա , եւ կենդանասցին» ։ Մի եւ նոյն խօսքն կը գտնուի նա եւ անանուն հեղինակին մօտ (Սեբէոս , էջ 5). «Ես ասացից աստուածոց լիզուլ զվէրս նորա եւ կենդանասցի» ։ Եւ երրու հետեւութիւն կը յաւելու. «Եւ այնպէս հանէ համբաւ արալեզաց տիկինն Շամիրամ» ։ Սոյն արալէզք հին ազգային աւանդութիւն մ'են , որք կը վերաբերին հօգեղէն էակաց հայկական պաշտաման ։ Եզնիկ Կողբացին (450ին միջոցները) իւր «Եղծ (այլ եւ այլ հեթանոս) աղանդոց» գրքին մէջ կը յիշատակէ այն տարօրինակ առասպելը , իբր թէ արալէզ կոչուած ոգիք երկնաւոր շանէ մի սերեալք լինին. (տպագր. Վենետկոյ , 1826 , էջ 90). «Ոչ՛ ի շանէ ինչ ելեալ , ընդ աներեւոյթ զօրութիւնս ինչ կեցցէ , եւ յորժամ վիրաւոր ոք անկեալ ի պատերազմի գնիցի՝ թէ լիզիցէ եւ ողջացուցանիցէ , զոր արալէզն կոչեն. այլ ամենայն առասպելք են,

եւ պատառատանց գրգլխինք, եւ մանուանող թէ ի դիւաց իսկ մոլորութենէ»: Ցայտնապէս Պղատոնի Էրն այս ոգւոց զօրութեամբ ողջացաւ եւ կենդանացաւ: Թէ այս հաւատքս որքան ամրացեր եւ հաստատուեր էր առ Հայս՝ կը ցուցընէ մեզ Փաւստոսի պատմած մէկ դէպքն, որ բոլորովին քրիստոնեայ ժամանակի կը վերաբերի: Երբոր, յամին 375, Հայոց մեծ սպարապետն Մուշեղ Մամիկոնեան՝ Վարազդատ թագաւորին վարձած մարդասպաններուն հարուածներուն ներքեւ մեռաւ, հեթանոսք նորա կտրուած գլուխը եւ մարմինը դրին դղեկի աշտարակին տանեաց վերայ՝ ըսելով. «վասն զի այր քաջ էր, առլէզք իջանեն եւ յարուցանեն զդա[1]»: Բայց երբ նեխեցաւ դիակն, իրենց ժայռի պէս հաստատուն հաւատքն այլ խախտեցաւ: Թագաւորականաց հակառակ եկեղեցական ազնուատոհմ կուսակցութեան գլուխ եղող ընտանեաց՝ տակաւին այնչափ խոր կերպով հեթանոսական գաղափարներով տոգորուած լինելն՝ յիրաւի սոսկալի ապացուցութիւն ըրաւ ամբողջապէս քրիստոնեայ դարձած երկրին վերայ: Այնուհետեւ ճգնաւորք եւ որբազան

1. Փաւստոս Ե, ԼԲ:

ուսուցիչք իրենց եռանդուն ճառերուն եւ քարոզութեանց գլխաւոր նիւթ ընտրեցին հեթանոս դից անկարողութեան այն նշանաւոր եւ աչքի զարնող օրինակը։

Արդ գտնենք տեսա այն զարմանալի նմանութիւնը, որ կայ ընդ մէջ աւեղեկութեանց Մար Աբասայ եւ Փաւստոսի։ Երկու պատմութեանց մէջ եւս մեռելոյն մերձաւոր ազգականք չեն ուզեր հաւատալ սպանելոյն մահուան. երկու կողմերն եւս հաւատարապէս մեռելոյն գլուխը բարձր տեղ մի կը դնեն. երկու կողմերն այլ կը թաղեն գլուխը նեխելուն պատճառաւ։ Սակայն պատահմամբ չէ՝ որ Մար Աբաս Կատինայի գրոց խմբագրութեան ժամանակն սակաւ մի յետոյ կը պատահի քան Մամիկոնեան ազգատոհմին զարմանալի դիպուածն։ Սոյն պատմական գործոյն գրութեան ժամանակն կը համարուի, գլխաւորապէս ի Գուտշմիդէ[1], 383—388 տարիներու միջոցն[2]։ Անտարակոյս քրիստոնեայ

1. Kl. Schr. III S. 321. 334.

2. Պ. Ցէտտէր՝ Մար Աբասայ պատմութեան պատկանող Հայ թագաւորաց ցուցակը ուրիշ աղբեր մի կ՚ընծայէ, վասն զի ըստ Մ. Խորենացւոյ՝ առընթեր կրտսերն Արշակայ կը դնէ զՎաղարշակ եղբօր թագաւորակից։ Պէտք է վերցնել « եղբարբ — աշխարհիս » բառերը

*հեղինակն՝ իրեն անմիջական փորձառութեանց համեմատ՝ արալէզ աստուածոց ոչնչութեան նկատմամբ ձեւեր եւ յարմարցուցեր է առասպելախառն զրուցին հետեւութիւնը, եւ ներմուծեր է անոր նեխեալ դիակին տգեղ դարձուածը :*

*Եթէ վերցնենք այդ մեկնողական յաւելուած մասերը, կ'ունենանք պարզաբար սարի դիցուհւոյ սիրոյն եւ իր տարփաւորին առասպելը : Շամիրամայ առասպելախառն աւանդութեան մէջ պահուեր է Աստղկան զրոյցն : Կարող ենք ենթադրել թէ՝ դիցուհւոյս սառրի պաշտաման բնիկ նախնական տեղւոյն մէջ յԱշտիշատ, նորա առաջին սիրոյն եղերական վախճանը պատմող տաղին մէջ աւելցեր է՝ Վահագն—Հերակլեայ հետ իրեն սրբազան հարսանեաց* (ἱερὸς γάμος) *երգն :*

(Սեբէոս, էջ 10) *իբրու եկամուտ յաւելուածներ, վասն զի թերի է գլխաւոր իմաստն՝ Հակառակ ցուցման Մար Աբասայ ցանկին :*



## Գ. ԲՆԻԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՍՏՈՒԱԾՔ

Բարշամին, Աստղիկ, Նանէա, եւ զը-
րոյցքն Բելայ եւ Շամիրամայ կը ներկա-
յացընեն այն ազդեցութիւնը, զոր սեմական
տարրն ըրեր է Հայաստանի վերայ։ Կը մը-
նան արդ բնիկ հայկական ծագմամբ աս-
տուածք։

Հարկ է յիշատակել աստ նախ եւ առաջ
վանատուր գիքը։ Դարձեալ Ագաթանգեղոս
է՝ որ տեղեկութիւն կու տայ մեզ նորա պաշ-
տաման մասին, շատ կարեւոր եւ շայեկան
տեղեկութիւն՝ որ կը ցուցընէ մեզ թէ ի՛նչ
կերպով քրիստոնեայ տօնք փոխանակեցին
հեթանոսական տօնից։ Այնպիսի ժողովըր-
դական եւ կարեւոր տօն մի, որպիսի էր նոր
տարւոյ եւ հնձոց տօնն, կեսարիայէն բե-
րուած սրբոց նշխարաց պատճառաւ՝ բոլորո-
վին քրիստոնէական նկարագիր մը ստացաւ։
Եւ որովհետեւ Ագաթանգեղոսի խօսքերն բա-
ւական մութ եւ դժուարին կէտեր կը բո-
վանդակեն իրենց մէջ, կը դնեմ աստ բոլոր
հատուածը ըստ բնագրին. «Եւ զյիշատակս
վկայիցն բերելոց ժամադրեաց տօն մեծ հըռ-

*չակել, յառաջագոյն կարծեալ սնոտեացն պաշտաման ի ժամանակի դիցն Ամանորայ ամենաբեր նորոց պտղոց տօնից հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին՝ յուրախութեան նաւասարդ աւուր*[1] »: *Յոյնն այնպիսի բնագիր մ'ունեցեր է առջեւը, որ շատ մասամբ կը տարբերէր ներկայ հայ բնագրէն.* (§ *149*). Καὶ τὰ μνημόσυνα τῶν ἐνεχθέντων μαρτύρων ἔταξεν εἰς τὴν μεγάλην πανήγυριν τῆς διαπομπῆς, τῆς ματαίως εἰς τιμὴν τῶν παλαιῶν σεβασμάτων γενομένης ἀπὸ τῶν καιρῶν τῶν νέων εἰς τὰς ἀπαρχὰς τῶν καρπῶν, ξενοδεκτῶν θεῶν λεγομένης τῆς πανηγύρεως ἣν ἐπιτελοῦσιν ἐν τῷ τόπῳ ἐκείνῳ εὐφραντικῶς ἀπὸ τῶν ἀρχαίων καιρῶν ἐν ἡμέρᾳ τῆς πληρώσεως τοῦ ἐνιαυτοῦ. *Հայ բնագրին մէջ կան « ի ժամանակի դիցն Ամանորայ » բառերն, որոնք բացայայտիչք են « տօնից հիւրընկալ դիցն Վանատրի » խօսքերուն: Արդ ի՞նչպէս կը կոչուի այդ դիքն, Ամանո՞ր թէ Վանատուր: Այդչափ պարզ եւ բացայայտ անձնաւորութիւն մի, որպիսի է « Ամանոր դիքն »,*

1. Ագաթ. ճժթ. էջ 619, ըստ տպագր. Վենետիկոյ, 1835:

ստուգիւ կը յիշեցնէ մեզ աւելի հոովմէական վերացական գաղափարներ՝ քան թէ հայկական հեթանոս կրօնից յատուկ եւ սովորական պաշտօն մի ։ Համեմատենք նման տեղերը. օրինակ իՄՆ (յէջ, 585), կ'ուզուի նախ կործանել « զուստ աստուածոցն զբագինսն », որ եւ սակաւ մի յետոյ աւելի բացայայտ կերպով կ'որոշուի, իբրու « մեհեան... սպիտակափառ դիցն Բարշիմնիայ » ։ Ցոյնն ճիշդ այս կերպով կը դնէ մեր վերոյիշեալ հատուածին մէջ. նախ ընդհանուր կերպով կ'ըսէ παλαιὰ σεβάσματα, յետոյ յատկապէս φιλόξενοι θεοί. փոքրիկ տեղափոխութեամբ մի « դիցն » բառին՝ կ'ունենանք հետեւեալ նախադասութիւնը. « յառաջագոյն կարծեալ սնոտեացն դիցն պաշտաման ի ժամանակի ամանորայ » եւ այլն ։ Իսկ « ամենաբեր—պտղոց » բառերը պէտք է միացընել « վանատրի » հետ ։ Ահաւասիկ վերոյիշեալ հատուածին ճիշդ իմաստն. « Պատուիրեց նա մեծահանդէս կատարել (իւր) փոխադրած վկայից տարեդարձ յիշատակը՝ իբրու մեծ տօն մի, մինչդեռ յառաջն սնոտի դից պաշտօնն ծառայեր էր իբր ժամանակ ամանորայ, յորում կը կատարուէր ամենայն նոր պտղոց բերոց եւ հիւրընկալ վանատուր դից տօնն, զոր յա-

առաջագոյն իսկ կը պաշտէին ուրախութեամբ նոյն տեղը Նաւասարդին օրը»։

Վանատուր դից ծանօթութեան մասին Մ. Խորենացին ծանրակշիռ տեղեկութիւն մի կու տայ մեզ, Բարդածանայ ընծայուած, որ գրեր է Ողիւմպիոս կամ Ողիւպ անեցւոյ Մեհենական պատմութեանց շարունակութիւնը (Բ, ԿԶ). «Ցորում պատմէ (Բարդածան) ի մեհենից պաշտամանց, վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի ի բագնայն աւանի, որ ի Բագրեւանդ գաւառի, բագին ի վերայ գերեզմանին շինեալ, զի ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, եւ ընդունիցին հիւրք երեկօթիւք։ Ցորում եւ զկնի Վաղարշ՝ տօն աշխարհախումբ կարգեաց ի սկզբան ամի նորոյ, ի մուտն Նաւասարդի[1]»։ Թուի թէ Հայք հաւատարիմ հետեւողներ եղած են յոյն բանապաշտ Եւհեմերեանց*։

1. Ամանորայ այս զուարթարար Նաւասարդի առաւօտու հանդէսն յիշատակուած կը գըտնենք Գողթան երգերէ միայն մէջ, զոր Գ. Մագիստրոս աւանդեր է մեզ եւ ոչ թէ Մովսէս, որուն հեղինակն անշուշտ Արտաշէս պարթեւն եղեր է. (Journ. Asiat. VI Sér. T. XIII S. 53).

* Euhéméristes, այսպէս կը կոչուին Մակեդոնիոյ Կասանդր թագաւորին Եւհեմեր (Euhémerus)

ինչպէս նոքա՝ Արամազդայ շիրիմ մի ի Կրետէ, Դիոնիսեայ շիրիմ մի ի Դեղփիս, եւ դից ուրիշ բազմաթիւ շիրիմներ որոշ եւ ծանօթ մարդոց կ'ընծայեն, այսպէս նա եւ այս տեղ վանատուր դից մեհեանն շինուած է ի Բագաւան թագազարմ քրմապետի մի գերեզմանին պատճառաւ։ Միւս կողմանէ կրնայ նա եւ պատմական լինել, թէ իրօք Մաժան քրմապետն այն սրբազան տեղւոյն մէջ թաղուեր է, որով եւ վանատուր դից տօնն, որ յառաջին լոկ տեղական էր մի փոքր աւանի համար, այնուհետեւ բոլոր երկրին համար ընդհանուր եւ պաշտօնական տօնախմբութիւն դարձեր է։

Բագաւանի սրբութեան նպաստաւոր ապացոյց մ' է այն, որ ս. Գրիգոր Կեսարիայէն բերած սրբոց նշխարները այն տեղ կը զետեղէ, ինչպէս ըրեր էր երբեմն յԱշտիշատ, որ հե-

ծովակալին անուամբ, որ Արաբիոյ մէջ ուղեւորութիւն մ'ըրեր եւ ἱερὰ ἀναγραφή անուամբ գիրք մի գրեր է։ Սա կը հաստատէ իւր գրութեան մէջ՝ թէ գտեր է Արամազդայ եւ այլ դից շիրիմները Արաբիոյ մէջ. հետեւաբար, իրեն կարծիքով, դիք կամ աստուածք ուրիշ բան չեն բայց միայն բարերար մարդիկ որք աստուածացեր են։ Ուստի Եւհեմերեանք կը կոչուին նոքա՝ որոնք կը հաստատեն թէ հեթանոսաց դիք՝ աստուածացեալ մարդիկ են. Եկեղեցւոյ ս. Հարք եւս այս կերպով կը բացատրէին հեթանոս դից գոյութիւնը։

Թանոսութեան երկրորդ հին նախրական կեդրոնն էր։ Ասորական եկեղեցւոյն մէջ, որուն հետ վաղուց իսկ եւ սերտիւ միացեր էր հայկական եկեղեցին, — ինչպէս կը հաստատէ զայս Աբգարու գրուցին հայ Թարգմանութիւնն, — արդէն շատ կանուխէն ծաղկեր եւ բարգաւաճեր էր սրբոց նշխարաց յարգութիւնն. բաւական է յիշել Աղեքսանդր Սեւերոսի ժամանակ եղած՝ ս. Թովմաս առաքելոյն մարմնոյն յԵդեսիա (զուցէ ստոյգ) փոխադրութեան հանդէսը։ Սրբոց նշխարք պահպանող զօրութիւն մ՚ունէին ընդդէմ դիւական ուժոց։ Դափնեայ Ապողոնին չէր կրնար գուշակութիւններ ընել՝ Յուլիանոս կայսեր ժամանակ, զի ճիշդիւ մեհենին դիմաց կանգնած էր Բաբելայ վկային մատուռն[1]։ Ի մասնաւորի շատ հետաքրքրական է Իսահակայ Անտիոքացւոյ[2] գիտողութիւնն այս մասին, զոր կ՚ընէ իւր տեղեկութեանց մէջ նկատմամբ դիւաց. « Երբոր ոմն կ՚երդնու կամ թոյլ կուտայ երդնուլ, եկեղեցին մեզ շատ անձուկ եւ գուզնաքեայ կ՚երեւի՝ երդումն այն տեղ ընդունելու համար։ Թէ եւ ով որ կ՚երդնու,

1. Սոկրատ Եկեղ. պատմ. Գ, ԺԸ. — Սոզոմենոս, Ե, ԺԹ։
2. Տե՛ս 154 ի Թարգմանութեան Բիքելի։

կ՚ուզէ իւր երդումն եկեղեցւոյն մէջ ընել. բայց ո՛վ որ պիտի ընդունի զայն, այն տեղ չուզեր ընդունել զայն՝ ըսելով. “ Եթէ դու ս. Թովմաս առաքելոյն մատրան մէջ չես երդ-նուր, ես վստահութիւն չունիմ վերադ,, ։ Այն տեղ լալագին գոչելով գեւք, կը պա-տուեն նոքա առաքեալը առաւել քան նորա տէրը։ Եկեղեցւոյն մէջ դիւրաւ եւ իսկոյն կ՚ը-նեն երդումնին, մինչդեռ առաքելոց տաճարին մէջ երկար ժամանակ կը վարանին նոքա ընել զայն »։ Այս կերպով, ասորի ժողովրդեան գաղափարին համեմատ, մարտիրոսաց անուամբ կամ իրենց նուիրուած տաճարաց մէջ եղած երդումն աւելի զօրաւոր եւ ազդեցիկ էր, քան ինչ որ կ՚ընէին յանուն Քրիստոսի։ Իսա-հակ աստուածաբանական մեկնութիւն մի կու տայ այս բանիս։ Ըստ իրեն կարծեաց, ա-ռաքեալք եւ վկայք դեւերը պատուհասելու պաշտօն ունէին, մինչդեռ Քրիստոսի արժա-նապատուութիւնն կ՚արգելուր դիւաց աղմուկ կամ շառաչ հանել իւր եկեղեցւոյն մէջ։ Ս. Գրիգոր եւս ըստ ամենայնի հետեւեր է սոյն բարեպաշտ կարծեաց*։ Մարտիրոսաց նըշ-

* Հեղինակն, բողոքական դաւանութեան պատ-կանելով, ի հարկէ իւր անձնական տեսութեանց համեմատ կը նկատէ սրբոց նշխարաց զօրութիւնը

խարք, զորս այնպիսի մեծահանդէս շքեղու-
թեամբ ղրաւ յԱշտիշատ եւ ի Բագաւան, երկար ժամանակէ ի վեր նոյն տեղեաց մէջ հաստատուած հին դեւերը հալածելու եւ պատուհասելու զօրութիւն ունէին։

Պարզաբար ազգային հայկական պաշտաման մէջ հարկ է յիշատակել նա եւ լուսնի եւ արեգական պաշտօնը, զոր կ'ակնարկէ Մ. Խորենացին (Բ, ՀԷ)։ Կը խօսի նա Հայաստանի տիրապետող սասանեան Արտաշրի մասին. «Զմեհենիցն պաշտամունսն առաւել եւս յորդորէ. այլ եւ զհուրն որմզդական՝ ի վերայ բագնին որ ի Բագաւան՝ անշէջ հրամայէ լուցանել։ Բայց զանդրիսն զոր արար Վաղարշակ պատկեր իւրոց նախնեացն հանդերձ արեգակամբ եւ լուսնիւ յԱրմաւիր, եւ փոխեցաւ ի Բագարան եւ դարձեալ յԱրտաշատ, զայնոսիկ փշրէ Արտաշիր»։ Մովսիսի ժամանակագրութեան մէջ մտեր է Արտաշիր՝ փոխանակ իւր Շապուհ որդւոյն։ Շատ նըշանաւոր է այն՝ որ Բագաւանի երեւելի գըլ-

յարգութեան պաշտօնը, որ ի սկզբանէ հետէ միշտ գոյութիւն ունեցեր է կաթողիկէ Եկեղեցւոյ մէջ թէ յարեւելս եւ թէ յարեւմուտս, որով եւ նորաձեւ կամ ինքնահնար վարդապետութիւն մի չէ այս հռովմէական եկեղեցւոյ, ինչպէս կը բաջաղեն բողոքականք։

խաւոր մեհեանին ատրուշանի փոխուեր է. յայտ է ապա թէ Պարսիկք եւ՝ քրիստոնէից նման՝ շատ կարեւոր համարեր են նոյն տեղւոյ գրաւումը աշխարհին կրօնական տիրապետութեան համար։ Զրադաշտականաց աններող բնաւորութիւնը ի նկատի ունելով, ամենեւին դժուարութիւն չկայ հաւատալու՝ թէ Պարսիկք յիրաւի կործաներ են Հայոց կուռքերը եւ արձանները։ Հայկական բազմաստուածութիւնն, հանդերձ իւր հզօր իրանեան տարրերով, — թէ եւ անտարակոյս շատ կերպով փոփոխուած եւ ազգային դարձած, — պէտք էր ամենէն աւելի մաքուր եւ յստակ կռապաշտութիւնն երեւել պարսիկ թագաւորին։ Բայց այդ տեղեկութեան մէջ զարմանալի է այն կէտն, որ պարսիկ թագաւորն ուղղակի միայն արեգական եւ լուսնի պատկերները կործաներ է։ Արդեօք խնայե՞ր է Անահտայ, Վահագնի, Բարշամինի եւ այլ դից արձաններուն։ Այտի դիւրաւ կրնանք հետեւցընել, թէ այդ երկուքն՝ թագաւորական արձաններուն հետ միասին դրուած՝ կը ներկայացընէին հայկական բնիկ կրօնքը, նախնեաց պաշտամունքը եւ լուսոյ աստուածութեանց կրօնական յարգութիւնը։ Այլ սակայն զարմանալի չէ՞, որ Ագաթան-

գեղոս ամենեւին յիշատակութիւն չըներ լուսնի եւ արեգական արձաններուն, մինչդեռ մանրամասն եւ լիուլի տեղեկութիւններ կու տայ հեթանոս մեհենից կործանելուն վերայ։ Այս բանի մասին կրնանք ենթադրել, եթէ հարկ լինի, թէ այն կարճ ժամանակամիջոցին, երբ թագաւորութիւնն վերստին հաստատուեցաւ Տրդատայ ձեռքով եւ տակաւին հեթանոսութիւնն բարգաւաճ վիճակի մէջ էր, բնաւ կարելի եղած չէ դարձեալ կանգնել նոյն աստուածոց արձանները կամ մեհենիկները։ Սակայն կը մնայ այս բանս պարզաբար դժուարակնճիռ ենթադրութիւն մի, որով եւ չեմ համարձակիր բացարձակապէս ժխտել այդ տեղեկութիւնը, եւ ոչ այլ ընդունիլ զայն անպայման։

Հայկական բնիկ հեթանոսութիւնը կազմող տարերաց կը պատկանին վերջապէս հոգեղէն էակաց պաշտաման հետքերն, ինչպէս ցոյց տուինք արալէզներու մէջ՝ Շամիրամայ զրոյցը քննած միջոցնիս։ Ճշդիւ այսմ կը պատկանին նա եւ «Հարք», ժողովրդեան աստուածացեալ նախկին տեարք։ Հայկ, իւր կարծեցեալ նախկին բնակութենէն ելնելով եւ գալով դէպ ի աշխարհն Արարատայ, (Մ. Խոր. Ա, Ժ), «գայ բնակէ ի բարձրաւան-

գակ դաշտի միում, եւ անուանէ զանուն լեռնապաշտակին Հարք, այսինքն թէ հարք են աստէն բնակեալքս»։ Շատ նուիրական սրբավայր մ՚եղեր է այս տեղս, նախկին ազգային առասպելական դիւցազանց եւ աստուածացեալ գլխաւոր ոգւոց բնակարանն։

Մեր հետազօտութենէն դուրս կը թողում երկու չաստուածները, զորս միայն Զենոբ Գլակէն գիտենք։ Այս մատենագիրս իւր Տարօնի պատմութեան մէջ կը յիշատակէ երկու աստուածներ, որ այլուստ ի սպառ անծանօթք են մեզ, Գիսանէ եւ Դեմետր, որոնք իբր թէ հնդիկ գաղթականութեան մի ձեռքով իրենց արեւելեան հայրենիքէն բերուեր են ի Հայաստան[1], եւ այն տեղ պաշտուեր եւ յարգուեր են, մինչեւ որ ս. Գրիգոր՝ յետ երկարատեւ եւ սաստիկ պայքարի՝ սպառսպուռ ջնջեր է նոցա պաշտօնը։ Ագաթանգեղոս ամենեւին ո՛ եւ է տեղեկութիւն չի տար այս մասին, մանաւանդ թէ բովանդակ պատմութիւնն ակն յայտնի հակասութեան մէջ է նորա պատմածներուն հետ։ Ըստ Զենոբայ, իբր թէ ս. Գրիգոր վերոյիշեալ եր-

1. Զենոբ Գլակ, Վենետիկ, 1839, էջ 8 և այլն։

կու աստուածոց պաշտաման տեղը գետեղեր է Յովհաննու Մկրտչի եւ Աթանագինեայ նշխարները, եւ անդ կառուցեր է սուրբ Կարապետի վանքը եւ հաստատեր է զՁենոբ իբրու առաջին եպիսկոպոս — վանահայր։ Բայց հաւանականաբար այս հռչակաւոր վանքս այնչափ վաղ ժամանակէ գոյութիւն չէ ունեցած, քանի որ Աշտիշատ սեփական կալուած էր ս. Գրիգորի ընտանեաց. եւ թերեւս աւելի ուշ ժամանակ, Ե դարու մէջ, կառուցուեր է այն Մամիկոնեանց ձեռքով։ Նոյն յետին ժամանակի անհարազատ գրութեան հակապատմական յատկութեան առջեւ՝ իբրու պարզաբար հնարուած կեղծիք կը նկատուին այս աստուածներս։ Գիսանեայ եղբայրն Դեմետր, որ կարելի է թէ յոյն Դեմետրէն առեր է իր ծագումը, յիրաւի հեղինակին ծանօթութեանց մասին շատ նպաստաւոր գաղափար մի չի տար մեզի։

## ՀԵԼԼԵՆԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ

Արեւելեան ուրիշ աշխարհաց նման, Հայաստանն եւս շատ կանուխ ժամանակներէ հելլենական կրթութեան կամ զարգացման

ազդեցութիւնը կրեր է ։ Տեղացի աւանդութիւնն յունական ազդեցութեան կ'ընծայէ պատկերաց պաշտաման մուտքը ի Հայաստան, եւ զարմանալի է որ նա՝ Մեծ Հայոց թագաւորութեան երկու ամենանշանաւոր անձինքը՝ իբրու գերազանց կերպով յունասէրս կը ներկայացընէ, այն է՝ Արտաշէս (Արտաշիսս)՝ թագաւորութեան հիմնադիրը, եւ Տիգրան՝ զայն կատարելագործողն ։ Անտարակոյս այս յունասիրութիւնս յատկապէս արեւելեան բնագրոշմ մ'ունի. յունական դից պատկերք եւ քուրմք բերուեցան ի Հայաստան եւ այն տեղ հաստատուեցան ։ Այս բանս շատ լաւ կը միաբանի այնոր հետ, զոր մենք գիտենք Տիգրան թագաւորի մասին արեւմտեան աղբիւրներէ ։ Նա Կիլիկիոյ եւ Կապպադովկիոյ քաղաքաց յոյն կամ յունացած ժողովուրդները խմբովին կը տանի եւ կը բնակեցընէ իւր տէրութեան մէջ, մանաւանդ նորաշէն մայրաքաղաքին մէջ ի Տիգրանակերտ[1] ։

Առ Մովսիսի Խորենացւոյ եւ Ագաթան-

1. Ἑλλήνων δὲ τὴν Μεσοποταμίαν ἐνέπλησε, πολλοὺς μὲν ἐκ Κιλικίας, πολλοὺς δ' ἐκ Καππαδοκίας ἀ.ασπ'στους κατοικίζων. Plut. Lucull. 21. 14, 29 ἐκ δώδεκα ἐρημωθεισῶν ἰπ' αὐτοῦ πολεων Ἑλληνίδων ἀνθρώπους συνχγαγών. Strabo XI 532 C. 539 C. Dio Cassius 36, 4.

գեղոսի յունարէն թարգմանութեան մէջ, աստուածոց հայ անուանք հետեւեալ կերպով թարգմանուած են.

| | | |
|---|---|---|
| Արամազդ | — | Ζεύς |
| Միհր | — | Ἥφαιστος |
| Անահիտ | — | Ἄρτεμις |
| Նանէա | — | Ἀθηνᾶ |
| Աստղիկ | — | Ἀφροδίτη |
| Տիւր | — | Ἀπόλλων |
| Վահագն | — | Ἡρακλῆς |

Բարշամին, որուն օտար ասորական ծագումն յայտնի է, եւ Վանատուր դիք՝ չունին իրենց համապատասխանող յունարէն թարգմանութիւնը։ Այս քաջածանօթ եւ հաստատուն, այլ մասամբ սակաւ յարմարող (թո՛ղ բաղդատուի, օրինակ իմն, Միհր — Ἥραιστος) համեմատութենէն կրնանք հետեւցունել, թէ սա երկար ժամանակ գործածութեան մէջ մնաց, եւ թէ մատենագիրք փոխառին զայն ժողովրդական գործածութենէն՝ որ այն ժամանակ կ'իշխէր։ Յունական արձանաց պաշտաման մուտ գտնելու մասին՝ Մովսէս Խորենացին մեզի երկու բոլորովին իրարմէ տարբեր տեղեկութիւններ կ'աւանդէ, որք յայտնապէս իրարմէ տարբեր աղբիւրներէ

յառաջ եկեր են։ Այսպէս նա եւ յետին ժամանակաց պատմութեանց մէջ կը պատահինք այնպիսի յաւելուածոց, որոնք կախումն ունին այս երկու տեղեկութեանց կամ առաջնէն կամ երկրորդէն։

## ԱՌԱՋԻՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

Մովս. Խոր. Բ. ԺԲ. «Եւ գտեալ յԱսիա պղնձաձոյլ ոսկէզօծ պատկերս զԱրտեմիդեայ եւ զՀերակլեայ եւ զԱպողոնի, տայ բերել յաշխարհս մեր զի կանգնեսցին յԱրմաւիր։ Զոր առեալ քրմապետացն, որ Լին յազգէ Վահունեաց, զԱպողոնի եւ զԱրտեմիդայն կանգնեցին յԱրմաւիր. իսկ զՀերակլեայն զառնապատկերն, զոր արարեալ էր ի Սկիւղեայ եւ ի Դիպինոսէ կրետացւոյ, ընդ Վահագն իւրեանց վարկանելով նախնի, կանգնեցին ի Տարօն յիւրեանց սեպհական գիւղն յԱշտիշատ, յետ մահուանն Արտաշիսի»։

Մովս. Խոր. Բ. Խ. «Բայց Երուանդ շինեալ զքաղաքն իւր, եւ փոխեալ անդր զամենայն ինչ յԱրմաւրայ ուրոյն ի կռոցն, զոր ոչ օգուտ իւր համարեալ յիւրն փոխել ի քաղաքն, զի մի՛ ի գալն եւ ի զոհել անդ աշխարհի՝ ոչ զգուշութեամբ պահեսցի քա-

ղաքն. այլ հեռագոյն ի նմանէ իբր քառասուն ասպարիսաւ զհիւսիսով նման իւր քաղաքին շինեաց քաղաք փոքր՝ ի վերայ գետոյն Ախուրենայ, եւ անուանեաց Բագարան, այսինքն թէ ի նմա յօրինեալ է զկազմութիւն բագնացն. եւ փոխեաց անդր զամենայն կուռսն որ յԱրմաւիր։ Եւ մեհեանս շինեալ, զեղբայր իւր զԵրուազ քրմապետ կացուցանէր »։

Մովս. Խոր. Բ. ԽԹ. «Երթեալ Արտաշիսի ի տեղին, ուր խառնին Երասխ եւ Մեծամօր, եւ հաճեալ ընդ բլուրն շինէ քաղաք յիւր անուն, անուանեալ Արտաշատ։ Կանգնէ ի նմա մեհեան եւ փոխէ ի Բագարանէ ըղպատկերն Արտեմիդայ եւ զամենայն կուռսն հայրենիս. բայց զԱպողոնի պատկերն արտաքոյ քաղաքին կանգնէ հուպ ի ճանապարհն »։

ԵՐԿՐՈՐԴ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

Մովս. Խոր. Բ. ԺԲ. «Բայց եւ յԵլլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդայ, զԱթենայ, զԵփեստու, զԱփրոդիտեայ, տայ բերել ի Հայս. որ ոչ ժամա-

նեալ միջամուտ լինել յաշխարհս, լսեն[1] զբօթ մահուանն Արտաշիսի, եւ փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի. եւ քուրմք կնոցին զհետ լինելով, դադարեն առ նոսա »:

Մովս. Խոր. Բ. ԺԴ. «Առաջին գործ զմեհեանսն շինել կամեցաւ. իսկ քրմացն, որ եկեալ էին ի Յունաց, զմտաւ ածեալ՝ զի մի՛ ի խորագոյն Հայս վարեսցին, պատճառեցան ըղձութիւնս, իբր թէ դիքն անդէն կամին գրնակիլ: Որում հաւանեալ Տիգրան, կանգնեաց զոլիմպիական պատկերն Դիոսի յամուրն յԱնի, եւ զԱթենայն ի Թիլն. եւ զԱրտեմիդայ զմիւս պատկերն յԵրիզա, եւ զԵփեստոսն ի Բագայառինջ: Բայց զԱփրոդիտեայ զպատկերն իբրեւ Երակլեայ տարփաւորի՝ առ նորին պատկերին Երակլեայ հրամայեաց կանգնել Յաշտից տեղիսն: (Եւ ցասուցեալ ընդ վահունիսն, եթէ ընդէ՞ր յիւրեանց սեպհականին իշխեցին կանգնեցին զպատկերն Երակլի՝ առաքեալ ի նորին հօրէ, ընկենու զնոսա ի քրմութենէն եւ ըզ-

1. Բնագրին խօսքերէն կը հետեւի, թէ սոքա այն քուրմերն են՝ որոնց յանձնուած էր արձաններուն փոխադրութիւնն:

գիւղն յարքունիսն առնու, յորում պատկերքն կանգնեցան [1]) ։ Եւ այսպէս մեհեանս շինեալ, եւ առաջի մեհենիցն բագինս կանգնեալ, զոհս ամենայն նախարարացն հրամայէ մատուցանել հանդերձ երկրպագութեամբ. . . . . . ։ Ինքն (Տիգրան) իջանէ ի Միջագետս, եւ գտեալ անդ զԲարշամինայ զպատկերն, զոր ի փղոսկրոյ եւ ի բիւրեղէ կազմեալ էր արծաթով, հրամայէ տանել կանգնել յաւանին Թորդան» ։

Իսկ եւ իսկ պիտի նկատէ ամենայն ոք, թէ այստեղ ունինք երկու տեղեկութիւններ, որոնք բոլորովին կը տարբերին ի միմեանց ։ Առաջնոյն մէջ կ'ըսուի, թէ աստուածոց արձանք բերուեցան յԱսիոյ, իսկ երկրորդին մէջ՝ Յունաստանէ ։ Առաջինն կը յիշատակէ միայն զԱպողոն եւ զԱրտեմիդ, Արտաշատու աստուածները, եւ զՀերակլէս՝ Տարօնի աստուածը ։ Սոքա մեհենական գրոյցք են պաշտաման այս երկու տեղեաց ։ Ի մասնաւորի հետաքրքրական է Աշտիշատայ գրոյցն ։ Այստեղ կը գտնենք ստուար խումբ մի քրմապետաց, Վահունիք, որոնք իրենց սեփական

1. Սոյն փակագծերու մէջ առնուած հատուածն՝ բացայայտ է թէ՝ առաջին տեղեկութեան կը պատկանի իրեն բովանդակութեամբը եւ շարայարութեամբը ։

նուիրական գիւղին մէջ Վահագնի պաշտօն կը մատուցանէին ։ Ըստ աւանդութեան զրուցին, երբ որ Արտաշէս Թագաւորն յոյն արուեստաւորաց շինած առաջին արձանները բարբարոս աշխարհին մէջ բերաւ, Վահունեաց ցեղին քրմապետաց խելամտութեամբ եւ համաձայն գործեց, եւ նոցա յանձնեց արձաններու փոխադրութեան գործը ։ Այլ ընդհակառակն, Տիգրանայ Թագաւորութեան միջոց, բոլորովին կը խզի ընդ մէջ գահուն եւ սեղանին եղած միութեան կապն ։ Տարօնի մէջ գտնուած քրմական գիւղն, հանդերձ իւր մեհեաններով, յարքունիս կը գրաւուի, եւ քըրմապետք կը զրկուին իրենց աստիճանէն եւ իշխանութենէն ։ Բնաւ անհաւատալի չէ այս դէպքն, վասն զի յետոյ ժամանակաւ արքունի տան երկրորդական ճիւղ մի հրապարակ կ'ելնէ իբրու ժառանգ եւ տէր Աշտիշատայ ։ Իսկ թէ Հերակլէս–Վահագնի շատ մեծարուած արձանն հին կրետացի արուեստաւորի մի գործն է, հարկ չկայ նկատել զայս իբրու հնարուած կեղծիք մի կամ Մովսիսի եւ կամ իրեն աղբեր՝ յորմէ առեր է զայն ։ Արդէն գիտենք. թէ Տիգրանայ ժամանակ որպիսի՛ սաստիկ հոսանք մի յունական քաղաքակըրթութեան մտեր եւ տիրացեր էր հայ ժողո-

վըրդեան բարձր դաստակերտին մէջ[1]։ — Տիգրանայ որդին Արտաւազդ Թագաւորն յունարէն լեզուով գրքեր կը շարադրէր։ — Հետեւաբար անկարելի չէ, թէ այս տեղ գործ ունինք մենք Աշտիշատայ մեհենին հին զր-րուցի մի հետ, զոր հնարեր եւ տարածեր էին քուրմք եւ աւանդապահք, որպէս զի աճեցընեն ժողովրդեան բարեպաշտ ջերմեռանդութիւնը եւ առատաձեռն պարգեւները։

Առաջին տեղեկութիւնն՝ բաց ի զրուցէն Աշտիշատայ՝ ունի նա եւ Արտաշատու զրոյցը։ Սոյն տեղւոյս աստուածներն, Անահիտ (Արտեմիս), եւ Տիւր (Ապողոն), ի սկզբան յԱրմաւիր կանգնեցան. յետոյ Երուանդ Թագաւորն փոխադրեց զանոնք ի Բագարան. եւ վերջապէս Արտաշէս Բ իւր նորահաստատ քաղաքին մէջ՝ յԱրտաշատ։ Ճիշդ է եւ համաձայն Ագաթանգեղոսի, — որ այս մասին միակ հարազատ աղբիւրն է, — այն վկայութիւնն՝ թէ միայն Անահտայ մեհեանն շինուեցաւ բուն իսկ քաղաքին մէջ, մինչդեռ Ապողոնի մեհեանն քաղաքէն դուրս կանգնեցաւ՝ կից ռազմագիտական մեծ ճանապարհին։ Դից ար-

1. Հմմտ. Թ. Ռէյնաք, Միհրդատ Եւպատոր, էջ 344, եւ այլն։

ձաններուն բնակութեան երրեակ տեղափո-խութեանց անսովոր պատմութիւնն ակնյայտ-նի անճշդութիւն մի կը բովանդակէ իւր մէջ, քանի որ անդ՝ Արտաշատ քաղաքին հիմնար-կութիւնը կրտսերն կամ երկրորդ Արտաշիսի կ՚ընծայուի, մինչ իրօք երէցն Արտաշիսի պէտք էր ընծայել ։ Դարձեալ բովանդակ պատմու-թիւնն ուշ ժամանակ եւ անյաջող կերպով հնարուած լինելու տպաւորութիւնը կ՚ընէ մարդու վերայ ։

Անհամեմատ կերպով դարձեալ մեծարգի է երկրորդ տեղեկութիւնն, թէ եւ նոյնպէս բնականաբար բնաւ պատմական չէ իւր ան-ձուկ առմամբ ։ Պատմութեան սկզբնաւորու-թիւնն, օրինակի իմն, շատ տարօրինակ է ։ Արտաշէս Թագաւորն հինգ աստուածոց ար-ձաններ բերել կու տայ Յունաստանէն. բայց նա կը մեռնի նախ քան նոցա հասնիլն ի-րենց որոշեալ տեղը, եւ քուրմք զարհուրած՝ արձաններուն հետ միասին կը փախչին կ՚ա-պաւինին յամրոցն Անի ։ Սակայն արժանա-հաւատ կ՚երեւի տեղեկութեան այն մասն, յորում Տիգրանայ կ՚ընծայուի այն նոր պաշ-տաման իրական հաստատութիւնը ։ Դիտելու արժանի է, որ այս տեղեկութեանս մէջ յի-շուած մեհեանքն, Անի՝ Դարանաղեաց մէջ,

Երէզ եւ Թիլ՝ Եկեղեաց մէջ, եւ Բագայա-
ռինջ՝ Դերջանու մէջ, բոլորն այլ երկրին
կամ տէրութեան այն կողմերուն կը պատ-
կանին, զորս Արտաշէս եւ իւր յաջորդք
մինչեւ ի Տիգրան՝ Մեծ Հայոց հետ միացու-
ցեր էին: (Ստրաբոն ԺԱ, 528 Գ): Բացար-
ձակապէս Եւկրատիդեայ, Մենանդրի եւ Ա-
պողոդոտեայ ժամանակամիջոցին կը յարմա-
րի այդ դէպքն, որով գլուխ քաշելով Սելեւ-
կեան պետութեան կուսակալներէ մին եւ նորա
զօրաւոր յաջորդն, մի եւ նոյն կերպով իրենց
սահական բարբարոս աշխարհին մէջ ներմու-
ծեր են յունական աստուածոց պաշտօնը, եւ ի
մի ձուլեր են զայնս բնիկ տեղացի պաշտա-
մանց հետ, ինչ կերպով որ սակաւիկ մի փոր-
ձեց ընել Անտիոքոս Եպիփան Պաղեստինի
մէջ: ինչպէս այն տեղ Երուսաղեմայ ճշմարիտ
Աստուածն կը ներկայացուի իբրու Ողիմբա-
կանն Արամազդ (Ζεὺς Ὀλύμπιος), եւ Սա-
մարիոյ Աստուածն՝ իբրու Վանատուր Արա-
մազդ (Ζεὺς Ξένιος). այսպէս նա եւ այս
տեղ՝ Արամազդ, Անահիտ, Միհր, եւ այլն,
նոր անուններ պիտի ստանային՝ Ողիմբական
Արամազդ, Արտեմիս, Հեփեստոս, եւ այլն,
եւ յոյն արուեստաւորի մի ձեռքով պիտի
ձուլուէին ի մետաղեայ արձաններ: իսկ յոյն

քրմաց ի Հայաստան բերուիլն մեհենական պաշտամանց համար՝ կատարելապէս կը համաձայնի այն տեղեկութեանց հետ , ինչ որ գիտենք յոյն աղբիւրներէն Տիգրան Թագաւորի քաղաքական գրութեան մասին ։ Բայց իրօք մեհենական գրոյց մ'է այն պատմութիւնն , ըստ որում քուրմք աստուածային ձայներ կը լսեն , որոնք իրենց կը յայտնեն երկնաբնակ դից կամքը , իբր թէ այն ինչ որոշեալ տեղը կ'ուզեն բնակիլ ։ Պատմութիւնն այդ ըղձութեանց մէջ պարզաբար քրմաց պատճառանքը կը նկատէ . հարկ չկայ բնաւ քրիստոնեայ սրբագրութիւն մի համարել զայն . բանապաշտ հեթանոս մ'այլ կարող էր ըստ ամենայնի մի եւ նոյն բանը ուսուցանել ։ Անտարակոյս , ինչպէս յոյն աստուածոց , այսպէս նա եւ ասորի երկնից չաստուածոյն արձանը դնել տուեր է Տիգրան ի Թորդան՝ Դարանաղեաց գաւառին մէջ , եւ նշանաւոր է որ ժողովրդեան դիցաբանական արգասաւոր զօրութիւնն իւրացուցեր է այդ արձանը ։ Ըստ այսմ կը տեսնենք , թէ ժողովրդեան կրօնական զգացումն զօրաւոր միջոց մի ունեցեր է՝ ասիացի բռնակալի մի մեզի բոլորովին սովորական եւ օրինաւոր երեւցող գործադրած միջոցներէն ։ Կրօնական

զաղափարաց ծնունդն, որ շատ անգամ գերազանց եւ լի խորհրդովք կ'երեւի, յետագայից իրօք յաճախ արտաքին եւ պատահական հանգամանաց արդիւնք է, մինչ մեր ներքին գիտակցութեան համեմատ, գրեթէ անհաւատալի կը թուի մեզ պարզաբար արտաքին միջոցներով եղած կրօնական ծաւալում մի. եւ սակայն կրօնական պատմութեան մէջ բազմաթիւ վկայութիւնք եւ օրինակներ կան այս բանիս. բաւական է յիշել միայն Արտաշէս Բ Մնեմոնի ծանրակշիռ հրովարտակը Անահտայ պաշտաման նկատմամբ, եւ Ռուսաց դարձն ի քրիստոնէութիւն:

Ըստ ինքեան բոլորովին անօգուտ խնդիր մ'է գիտելն, թէ արդեօք Հայոց կրօնական պաշտամունք՝ նախ քան յունական քաղաքականութեան ազդեցութիւնն՝ զո՞ւրկ էին ի սպառ արձաններէ թէ ո՛չ: Կարելի է թէ յառաջին մի քանի տձեւ եւ խորհրդական նշանագործ պատկերք առարկայք էին նոցա պաշտօնասիրութեան: Ցամենայն դէպս պէտք ենք հաստատուն բռնել այն աւանդութիւնը, յորմէ գիտենք թէ յունասէր թագաւորքն եւ տէրութեան հիմնադիրքն Արտաշէս եւ Տիգրան, ինչպէս որ յունական ուսումը եւ կրթութիւնը բուռն կերպով յառաջացուցեր եւ ծաղ-

կեցուցեր էին, այսպէս նա եւ մուծին Հայաստանի մէջ արձանաց կրօնական պաշտօնը, որ նախկին ժողովրդոց քաղաքականութեան զօրաւոր միջոցներէն մին եղած է ։ Սակայն բնաւ հաւանական չէ կարծելն, իբր թէ արձանաց նոր պաշտօնն առանց ընդդիմութեան հաստատուած լինի ։ Բայց այս տեղ ամենեւին արժէք մի չունին, ըստ մանրամասն պարզաբանութեան Գուտշմիդի, Մովսեսի պատմածներն Բագրատունեաց ցուցած հակառակութեան մասին, հանդերձ նոյն ցեղին ինքնահնար կարծեցեալ հրէական ծագմամբ ։

Յիրաւի պատահմամբ չէ, որ այն « սակաւ՝ բայց նոյնքան աւելի մեծարգի տեղեկութիւնք հայ հեթանոսութեան պատմութեան մասին », առ Մովսէսի Խորենացւոյ կը սկսին այն տեղ, ուր որ կը սպառին « բանք ծերունւոյն Մար Աբաս կատինայ » ։ Արդէն Գուտշմիդ շատ կարելի եւ հաւանական կը համարի, թէ այդ տեղեկութիւնք առնուած են Ոլիւմպիոսի անեցւոյ Մեհենական ժամանակագրութենէն ։ Մովսէս (Բ, ԽԸ) կը կոչէ այդ հեղինակը « Ուղիւպ քուրմ Հանւոյ », եւ նորա գրութիւնը « Մեհենական պատմութիւնք » (ἱερατικαὶ ἱστορίαι) ։ Կր

գտնուի նորա մօտ նա եւ եզակի ձեւն « Մեհենական պատմութիւն » , ինչպէս նա եւ « Մեհենից պաշտօնք » ։ Առաջին հատուածին մէջ կը յիշէ նա նոյն գրութիւնը Արտաշէս թագաւորին պատմութեան մէկ գիրուածին առթիւ ։ Իսկ երկրորդին մէջ որոշակի կը հաստատէ , թէ մեհենական պատմութեան մէջ կային նշանակուած նա եւ « գործք թագաւորացն » , եւ թէ գնոստիկեան աղանդաւորն Բարդածան շարունակեր էր նոյն գրութիւնը՝ Արտաւազդ թագաւորէն մինչեւ ի Խոսրով ։ Դարձեալ , թէ վերջինս (Բարդածան) նոյն գործը թարգմաներ էր յասորի լեզու , եւ թէ յետոյ ժամանակաւ նոյն գրութիւնն — չի յիշատակեր թէ որո՛ւ ձեռքով — յունարէն թարգմանուեր է ։ Այսու բացայայտ կերպով չի ըսեր մեզ Մովսէս՝ թէ Ողիւմպիոս կամ Ողիւպ ի՛նչ լեզուով գրեր էր . որովհետեւ նոյն գրութիւնն նախ ասորերէն թարգմանուեցաւ , յետոյ յունարէն , հետեւաբար ընթերցողն ի հարկէ ստիպուած է մտածել՝ թէ բնագիրն հայերէն եղած պէտք է լինի , եւ Մովսէս չէ ուզած դիտակցօրէն արթնցնել ի միտս ընթերցողին սոյն կարծիքը ։ Այս թարգմանութիւնք միշտ կասկածելիք են առ Մովսէսի ։ Յիշենք անգամ մի Մար

Աբաս կատինան, որ քաղդէարենէ յունա-րէն թարգմանուած գիրք մի գտաւ, յորմէ համառօտելով քաղուածոյ մի ըրաւ յունարէն եւ ասորերէն լեզուներով։ Իրօք պարզաբար ասորի գրութիւն մի միայն կը գտնուի։ Բար-դածանի հեղինակ կամ մատենագիր լինելն իրաւամբ երկբայութեան առարկայ է [1]։ Գուցէ այդ բանին պատճառ եղեր է այն պէտքն՝ զոր կը զգայր Մովսէս, որով կ'ուզէր իր մեհենական հեթանոս պատմութեանց հա-մար քրիստոնեայ ապահով երաշխաւոր մ'ու-նենալ։ Մինչ ընդհակառակն, ինչպէս կը թուի ինձ, բնաւ պատճառ մի չի կայ Ու-ղիւպի մեհենական պատմութիւնը Մովսիսի հնարած գիւտը կամ կեղծիքը համարելու [2]։

1. Gutschmid, Kl. Schr. III S. 304.

2. Ինչպէս կը համարի J. Marquart (ZDMG, XLIX S. 656), որ Ուղիւպի մէջ ուրիշ ոք չէր տեսներ՝ բայց միայն Մաժան քրմապետն հել-լենացած։ Սակայն դիցաբանական պատմական նիւթեր ստեղծելն կեղծեօք՝ աւելի Զենոբ Գլա-կայ յատուկ է քան Մովսիսի, զի սա ընդհան-րապէս առաջնակարգ հեղինակութիւններ մէջ կը բերէ (Ափրիկանոս, Փիրմիլիանոս, Արիստոն Պելլացի, Փլեգոն, եւ այլն), բայց միայն միշտ այնպիսի նիւթոց մասին՝ զորս նոքա չեն պատ-մած կամ աւանդած եւ կամ չէին կարող ա-ւանդել։ Այսպէս կրնայ պատահած լինել նա եւ Ուղիւպի նկատմամբ, առանց կեղծիք մի համարելու նորա անձնաւորութիւնը։

Ուղիւպի հետ միասին կը յիշատակէ Մովսէս (Բ, ԽԸ), պատմութեան այն շրջանին համար՝ ուր կը դադրի իր հին առաջնորդն Մար Աբաս, նա եւ «Պարսից մատեանքն եւ երգքն վիպասանաց»։ Առաջնոց հետ պէտք է յիշել նա եւ Բարսումայի (Խոռոհբուտ) գիրքը[1]։ Սակայն կարելի չէ որ իր պատմութեան մեծագոյն մասը առած լինի կամ Պարթեւաց պատմութենէ մի եւ կամ պատմական երգերէ։ Դարձեալ, Արտաշիսի, Տիգրանի, Երուանդայ եւ այլ Թագաւորաց պատմութեանց մէջ բազմաթիւ տեղեկութիւններ կը գտնուին մեհենից եւ պաշտամանց կազմակերպութեանց մասին. հետեւաբար շատ հաւանական է Գուտշմիդի այն ենթադրութիւնն, թէ այդ տեղեկութիւնք բոլորն այլ առնուած են Ուղիւպի գրութենէն։ Ի՞նչպէս եւ ի՞նչ լեզուով գրեր է Ուղիւպ, յունարէ՞ն թէ ասորերէն։ Շատ իրաւացի կերպով կը դիտէ Գուտշմիդ, թէ նորա գրքէն առնուած բառերն բնաւ յունարենէ եղած փոխառութեան մի հետքը չունին։ Պէտք է ասորերէն շարադրուած լինի նոյն գիրքն, որով կրցեր

1. Մովս. Բ. կթ, Հ։ Հմմտ. Gutschmid, Kl. Schr. III S. 301 ff.

է շարունակել զայն Բարդածան, թարգմանել եւ իր քրիստոնեայ պաշտպանութեան ներքեւ առնուլ զայն։

Մեհենական գրոյցք կը ցուցընեն եւհեմերեան (բանապաշտ) մեկնութեան եղանակ մի, օրինակ իմն, այն ըղձութեանց նկատմամբ՝ որք արձանները գնելու տեղը ցոյց կու տան, եւ նկատմամբ Բագաւանի մէջ գտնուած վանատուր դից մեհենին, որ իրօք ուրիշ բան չէ՝ բայց քրմապետի մի շիրիմն։ Բնաւ հարկ մի չկայ քրիստոնէից ընծայելու սոյն բանապաշտ մեկնութիւնս. զի իրօք մեհենական պատմութեանց հեղինակն՝ նման Փիլոնի Բիւբղացւոյ եւ Սուետոնիոսի, իւր խօսքերը ուղղեր է այնպիսի ուսեալ մարդկանց, որք շատ ժամանակէ ի վեր ծանօթ էին հին առասպելաց սոյն մեկնութեանց։



# ՀԱՅԿԱԿԱՆ

## ՀԵԹԱՆՈՍ

## ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Շատ սակաւաթիւ են ընիկ ազգային դիցաբանական գրուածեան մի կազմակերպութեան հետքերն, հայկական հեթանոս կրօնից մասին տեղեկութիւնք ։ Ինչպէս ուրիշ տեղեր, այսպէս նա եւ Հայաստանի մէջ կը գտնենք աստուածները երրեակ եւ ութեակ խմբերու դասաւորուած ։ Հարաւային Հայաստանի մէջ, Տարօն գաւառին մէջ, ծանօթ են մեզ արդէն Աշտիշատու եռաթիւ դիքն, Վահագն — Անահիտ — Աստղիկ ։ Ուրիշ երկրորդ եռաթիւ դից կը պատահինք Տրդատ Թագաւորի հրովարտակին մէջ, յորմէ կը հետեւի՝ թէ այս դիք պաշտօնապէս ընդունուած էին իբրու աշխարհին երեք մեծ պաշտպան աստուածքն. (Ագաթանգեղոս, ԺԲ, էջ 102). « Տրդատ արքայ Հայոց մեծաց, առ մեծամեծս, եւ առ իշխանս, եւ առ նախարարս, եւ առ գործակալս, եւ առ այլ մարդիկդ որ ընդ իմով իշխանութեամբ էք,

յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս, առ ազատս եւ առ շինականս, միանգամայն իսկ առ ամենեսեան ողջոյն։ Ողջոյն հասեալ եւ շինութիւն դիցն օգնականութեամբ, լիութիւն պարարտութեան յարոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, եւ քաջութիւն հասցէ ձեզ ի քաջն Վահագնէ ամենայն աշխարհիս Հայոց, եւ այլն»։

Սակայն կ՚երեւին նա եւ բոլոր հայ մեծամեծ աստուածները ի մի բովանդակող դրութեան մի հետքերին։ Անտարակոյս այն տեղ եւս քուրմք ստիպուած էին հաստատելու այնպիսի դրութիւն մի, որ իւր մէջ կ՚ամփոփէր բոլոր երկնից բնակիչները, ինչպէս որ ըրեր էին իրենց ընկերքն յԵգիպտոս, ի Բաբելոն կամ յԱթէնս։ Ագաթանգեղոս կը պատմէ՝ թէ Խոսրով թագաւորն, Տրդատայ հայրն, յետ յաղթելու զՊարսիկս՝ մեծաշուք հանդիսիւ զոհ մատոյց «յեօթն բագինս մեհենիցն». (Ա, էջ 30). «Ապա հրաման տայր ընդ կողմանս կողմանս դեսպանս արձակել, հրովարտակս առնել, յեօթն բագինս մեհենիցն ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտաման։ Սպիտակ ցլուք եւ սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք եւ սպիտակ ջորովք, ոսկեղէն եւ արծաթեղէն

զարդուք, ի վերջաւորս փողփողեալս, Նշանակապ պալարակապ մետաքսիւքն, եւ ոսկովք պսակօք, եւ արծաթի զոհարանօք, յանօթս ցանկալիս ականբք պատուականօք, ոսկով եւ արծաթով, ի հանդերձս պայծառս, եւ ի զարդս գեղեցիկս, զիւր ազգին Արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր »:

Եօթն բագնաց պաշտաման տեղն չէ կարող լինել, ինչպէս կը կարծէ Թովմասէոյ, Մովսէսի Աշխարհագրութեան մէջ (յէջ 33 հ. Արսէն Սիւքրեանի[1]) յիշուած փայտակարան նահանգին Եւթնփորակեան բագինքն կամ եօթն նշանաց բագինն. վասն զի զոհին նկարագիրը ընելէն անմիջապէս յառաջ կը պատմուի, թէ Թագաւորն լի շքեղութեամբ մտեր էր իւր Վաղարշապատ մայրաքաղաքին մէջ: Այն տեղէն Թագաւորն դեսպան եւ հրաման կ'արձակէ բոլոր գաւառներուն մէջ, որպէս զի փութան ժողովին եւ ամէնքը միասին դից շնորհակալութեան ազգային հանդէս մի կատարեն: Ապա ուրեմն, եօթն բագնաց կեդրոնական մեհեանն պէտք էր

1. Հմմտ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին հայաստ. յէջ 326:

Վաղարշապատու մօտ գտնուիլ , Թագաւորութեան կեդրոնին մէջ , եւ ոչ թէ արեւելեան հեռաւոր կողմանց մէջ ։ Եօթն բագինք կը յիշեցընեն եօթն Ամէշա — Սպենդաները , յԱբդարդայ Տաւրոսեան Ալաններուն [1] ։ Այնքան բազմաթիւ սպիտակ անասնոց զոհերն կը համապատասխանեն ըստ ամենայնի Աւեստայի պատուիրած ծիսից [2] ։ Այս բանիս հետ կը միաբանի այն պաշտօնական յայտարարութիւնն , թէ Թագաւորն զոհերուն ծէսը կատարեց ըստ օրինակի իրեն նախնեաց՝ պարթեւ Արշակունեաց ։ Շատ հաւանական է թէ այս եօթն թուոյն հետ սերտ յարնչութիւն ունի ութ թիւն , որուն թէ եւ մէկ հետք միայն ունինք , բայց շատ ծանրակշիռ եւ վաւերական հետք մ'է ։ Վահագն՝ իւր բնիկ պաշտաման տեղւոյն մէջ յԱշտիշատ՝ կը կոչուի ութերորդ պաշտօն (ὄγδοον σέβασμα) ։ Իրանեան դիցաբանութեան մէջ անկարելի է գտնել նեցուկ կամ հիմ մի այս ութ թուոյն. առ առաւելն յետին ժամանակաց փիւնիկեցի դիցաբանութեան մէջ ծանօթ է ութ թիւն ։ Այս բանի

1. Tomaschek bei Wissowa-Pauly unter Abdarda.

2. W. Geiger, ostiranische Cultur S. 469.

մասին կը պատմէ Դամասկացին. (*Photius bibl.* 242 *p.* 352*b Bekker*). « Զի Ասկլեպիոսն բերիւտացի, ասէն, ոչ է Հելլէն, եւ ոչ եգիպտացի, այլ բնիկ ազգաւ փիւնիկեցի ։ Զի Սադիւկեայ եղեն որդիք, զորս Դիոսկուրեանս յորջորջեն եւ Կաբիրեանս ։ Զաա յայտնէ եղեւ եւ ութերորդ Եսմունոսն, զոր Ասկլեպիոսն կոչեն[1] » ։ Այս տեղ ունինք մենք եօթն աստուածներ, որոնք մէկ հօր որդիք են, եւ անոնցմէ զատ՝ ութերորդ մի ։ Անտարակոյս վերջին ժամանակաց դիցաբանական վարդապետութիւն մ'է այս, ճշդիւ փիլոնի բիւբլացւոյ գրութեան համաձայն ։ Սակայն ի նկատի առնըլով այն զօրաւոր ազդեցութիւնը, զոր ունեցեր են յունացած Ասորիք ի մասնաւորի Հայաստանի վերայ, չէ կարելի մերժել այն միտքը կամ գաղափարը՝ թէ յիրաւի հայկական դիցաբանութիւնն շատ մեծ ազդեցութիւն կրեր է այս կամ ուրիշ նման գրութիւններէ ։ Եթէ ժողովենք յիրաւի այն աստուածները, որոնց մեհեանները կործանե-

1. Ὅτι δ ἐν Βηρυτῷ, φησίν, Ἀσκληπιὸς οὐκ ἔστιν Ἕλλην, οὐδὲ Αἰγύπτιος, αλλά τις ἐπιχώριος Φοῖνιξ. Σαδύκῳ γὰρ ἐγένοντο παῖδες, οὓς Διοσκούρους ἑρμηνεύουσι καὶ Καβείρους. ὄγδοος δὲ ἐγένετο ἐπὶ τούτοις ὁ Ἔσμουνος, ὃν Ἀσκληπιὸν ἑρμηνεύουσιν.

ցին Տրդատ կամ ս. Գրիգոր, եւ որոնք հետե-ւաբար տէրութենէն ծանուցուած պաշտամուն-քը կը ներկայացընէին, այն ժամանակ պիտի ունենանք յիրաւի ութ աստուածներ՝ Արա-մազդէն դուրս, որ հայր էր ամենայն դից:

1. Վանատուր, որուն տօնախմբութիւնն կը կատարուէր նաւասարդի առաջին օրը, որ եւ հաւանականօրէն առաջինն է դից կարգին մէջ, ինչպէս նա եւ տօնական հանդիսից:

2. Միհր, որդի Արամազդայ:

3. Անահիտ, դիցամայր եւ դուստր Ա-րամազդայ:

4. Նանէա, դուստր Արամազդայ:

5. Բարշամին, սպիտակափառ դիք:

6. Աստղիկ, տարփաւոր Վահագնի:

7. Տիւր, դպիր Որմզդայ:

8. Վահագն ութերորդ:

Յետին ժամանակաց դիցաբանութիւնն ան-շուշտ իբրու Արամազդայ որդիք նկատեր է նա եւ Նանէայէն վերջը դրուած երեք աս-տուածները, թէ եւ այս մասին ո՛ եւ է վկայութիւն չունինք. վասն զի այսու միայն կը ստուգուի Արամազդայ կոչումն՝ իբր հայր ամենայն աստուածոց: Բնականաբար հայ

պանթէոնին այսպիսի վերանորոգում մի պէտք է միշտ իբր ենթադրութիւն մնայ։ Սակայն սեմական դիցաբանութեան հետ ունեցած յարնչութիւնք շատ բացայայտ եւ անժխ-տելի են, որպիսիք են, հայրն աստուածոց, եօթն որդիքն, ութերորդն, որ շատ դժուա-րաւ կրնանք պարզաբար իբր պատահական համարել։

Վերջապէս հարկ է յիշատակել նա եւ դիցաբանական գիտութեան բոլորովին նոր եւ առանձնացած մէկ հատուածը։ Մովսէս Խորենացին (Ա, ԼԱ) կը պատմէ՝ թէ ըստ ոմանց տեսութեան կան չորս կամ բազում Արամազդք, «յորոց մի է եւ կունդ ոմն Արամազդ»։ Այս այլ եւ այլ Արամազդներու եւ Հերակլէսներու զանազանութիւնն, զոր հաստատեր են իմաստասիրութեան սիրող եւ հետամուտ դիցաբանք, Հայերն եւս փոխ ա-ռեր են Յունացմէ։ Բայց մինչդեռ յոյն դիցաբանք միայն երեք Արամազդ կը ճանչ-նան[1], առ Հայս չորս եւ նոյն իսկ աւելի Արամազդք կը յիշուին։ Կղեմէս, յետ յա-նուանէ յիշատակելու երեք Արամազդները,

1. Cicero de nat. deor. III. 21. Ampelius IX. Clement. Alexandr. Protrept. p. 8 Potler.

*դարձեալ սակաւ մի յետոյ (յէջ 33 Բ.) Արամազդայ յատուկ ձեւերը մէջ կը բերէ.* οὐχὶ μέντοι Ζεὺς φαλακρὸς ἐν Ἄργει, τιμωρὸς δὲ ἄλλος ἐν Κύπρῳ τετίμησθον. *Արդ, կուզէ Արամազդն ուրիշ բան չէ՝ բայց միայն* Ζεὺς φαλακρὸς*ի թարգմանութիւնն ։ Այս բանս պիտի համաձայնէր բոլորովին այն կամայական եղանակին, որով կը յարմարցնէ Մովսէս վկայութիւնները, եթէ նա Կղեմայ այս երկու տեղեկութեանց վրայ հաստատած լինէր իւր ծանօթութիւնը չորս կամ աւելի Արամազդներու մասին ։ Յամենայն դէպս, այդ ծանօթութիւնն յառաջ եկեր է յունարէնի հմուտ գիտնականի մի ազդեցութեամբ, եւ ոչ թէ յունացած գաղափարէ մի, որ մուտ գտած լինի ժողովրդեան մէջ կամ առ առաւելն ժողովրդեան բարձր դասակարգերուն մէջ ։*

*Հայկական պանթէոնի մասին մեր ըրած հետազօտութեանց հետեւանքն կամ եզրակացութիւնն, առ որ հասանք, բոլորովին աւելորդ եւ առանց նշանակութեան չէ ։ Նա մեծ լոյս կը սփռէ նմանօրինակ հանգամանաց մէջ գտնուած ժողովրդոց վրայ, այսինքն է, որոնք հեթանոս Հայոց պէս զարգացման մի եւ նոյն աստիճանին մէջ կը գտնուէին, հետեւաբար զուրկք գրականութենէ*

եւ նշանագրերէ ։ Եւ յիրաւի այսպիսի բարբարոս ժողովուրդ մ’էին ո՛չ միայն Միկէնքի, Տիրինսի եւ Որքոմենեայ Ցոյնք, այլ եւ իրենց քաղաքակրթութեան այն աստիճանն, ուր հասեր էին Թ եւ Ը դարուց մէջ, ըստ ամենայնի նման եւ հաւասար էր այն աստիճանին՝ ուր հասեր էին Հայք քրիստոնէութեան Բ եւ Գ դարուց մէջ ։ Այսպիսի ժողովուրդ մի, թէ եւ երկար ժամանակէ ի վեր մշակէ երկրագործութիւնը, դարմանէ որթը եւ ձիթենին, ոսկեղէն զարդեր փոխանակէ ասիական վաճառաց տեղ, սակայն այնու հանդերձ մտաւոր զարգացման տեսակէտով տակաւին մանուկ մ’է, ապխտակ թերթ մի թղթոյ, կակուղ մոմ մի, որ դիւրաւ կ’ընդունի օ՛ եւ արտաքին ազդեցութիւն ։ Այս պատճառաւ շատ գեղեցիկ եւ շատ իրաւացի կերպով կ’ըսէ Հերոդոտոս (Ա, 135) Պարսից մասին, որոնք քաղաքակրթութեան եւ զարգացման մի եւ նոյն աստիճանին մէջ կը գտնուէին. «Պարսիկք ամենամեծ դիւրութեամբ կ’ընդունին արտաքին սովորութիւնները» ։ Հայք, իրենց պատմութեամբ, իրենց հարստութեամբ եւ ազնուականութեամբ, ամենասերտ կապով միացած են իրանեան Պարթեւաց հետ. նոքա Ասորւոց շատ ստեալ

եւ զարգացեալ դրացիներն եղան ։ Ի՞նչ զարմանք ապա, եթէ իրենց ոլիմպոսն միանգամայն իրանեան եւ սեմական եղեր է ։ Պէտք էինք կարծել, թէ օտար քաղաքակրթութեան այն բուռն եւ հզօր հոսանքն պիտի ջախջախէին այս փոքրիկ ազգը, որ իւր չափաւոր զարգացման պատճառաւ, դիմադրելու կարողութիւն չունենալով, բոլորովին բնաջինջ պիտի կորուսանէր իւր անհատական անձնաւորութիւնը՝ որ սակաւին տկար կերպով զարգացեր էր ։ Սակայն բոլորովին հակառակն պատահեցաւ ։ Յատկապէս բնիկ ազգային աստուած մի, ինչպէս էր Վանատուրն, բոլոր ազգին ամենէն աւելի նշանաւոր աստուածներէն մին հանդիսացաւ. Նորա մեհեանն բոլոր ժողովրդեան ուխտագնացութեանց կեդրոն դարձեր էր մինչեւ քրիստոնէութեան ժամանակ ։ Ի բնէ օտար դից արձանք, ինչպէս իրանեան Վահագն, այնքան կատարեալ կերպով հայացեր եւ այնպիսի ժողովրդականութիւն մի ստացեր էին բոլոր ազգին մէջ, որ բնիկ մազդեզական կրօնից դաւանողք կռապաշտ կը համարէին զՀայս, որոնք այնչափ բաներ փոխ առեր էին իրանէն ։ Հետեւաբար ազգային ոգին բնաւ չէր ջնջուած կամ ջախջախուած օտար

ազդեցութեան ներքեւ, այլ մանաւանդ թէ այնու ուղղակի ճշմարիտ եւ անկախ զարգացում մ՚ունեցեր էր։ Աստի յունական դիցաբանութեան մասին ինքնին յառաջ կու գան հետեւանքներն։

## ՎԵՐՋ